

Հող իմ հայրենի,
Երդվում եմ ես քեզ՝
Միշտ լինել արի
Ու քեզ պես բարի։
Եվ թե հարկ լինի՝
Կրծքով պաշտպանել
Փառքդ դարերի։



# Զոհվածներին

Ընկան նրանք
Հանուն կյանքի,
Հանուն խաղաղ
Մեր գալիքի։

Ընկան... Սակայն
Ապրում են, կան
Ու դեռ կապրեն
Մեզնից երկար։

ՆՈՐԻԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Ստեփանակերտ, 5-րդ դասարան

# Ղարաբաղ

Մի լեռնաշխարհում՝
Փոքրիկ մի ձորակ,
Փոքրիկ ձորակում՝
Փոքրիկ մի գյուղակ,
Գյուղակի ծայրին՝
Փոքրիկ մի տնակ,
Տնակին մոտիկ՝
Փոքրիկ մի այգի,
Ու փոքրիկ այգում՝
Մի լուռ թթենի...



Փչեց աշնան քամին՝
Տերևը ծառից ընկավ,
Ագռավը՝ նստած ծառին,
Զարագուշակ կռռաց։

Ցավե՞ց, արդյոք, սիրտը նրա
Ընկած տերևի համար,
Թե լոկ իր հաճույքի համար
Սև ագռավը կռռաց։



ԼԵՌՆԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ
Ստեփանակերտ, 8-րդ դասարան



ՎԱՀԵ ԳԵՎՈՐԳՅԱՆ, 12 տ.
Կիրովական
(Ինքնանկարի մրցույթ)



ՎԱՐԴՈՒՀԻ ԽԱՉԱՏՐՅԱՆ, 13 տ.
Լենինական

ԱՐՓԵՆԻԿ ԿԱՐՈՅԱՆ, 13 տ.
Վրաց. ՍՍՀ, Ախալքալաքի շրջ.,
գյուղ Դիլիսկա

ԱՆՆԱ ՍԵՐԱԴԱՐՅԱՆ, 11 տ.
Երևան

ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 9•86

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ
Վ. ՀՈՎՍԵՓՅԱՆ. Ուսուցչի օրագրից . . . . 2
Ս. ԶԱՔԱՐՅԱՆ. Համբերությամբ սպասում է . 4
Թ. ՏՈՆՈՅԱՆ. Բանաստեղծություններ . . . 7
Վ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ. Կա-չկա . . . . 8
Ռ. ԻՇԽԱՆՅԱՆ. Զրույցներ հայ ժողովրդի պատմությունից . . 10
ՀՈԳԵՀԱՑԸ. Ուկրաինական ժող. հեքիաթ . . 12
Լ. ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆ. Արամ Թալալյան . . 15
Ա. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ. Մայր Արաքսի վիշտը . . 16
ԴԱՍԱԿԱՆՆԵՐԻ ԷՋ . . . . . . 18
Վ. ԱՐԱՄՅԱՆ. Հանդիպման ու անջատումի տարիներ . . . 19
Մ. ՓՈՑԽԻՇՎԻԼԻ, Մայրիկ . . . . . . . . 23
Մ. ՈՍԿԱՆՅԱՆ. Գյուղ Մադինա . . . . . 24
Ա. ԿՈՒԼԱԽՍԶՅԱՆ. Տերյանի թանգարանը . . 26
Ա. ՈՒԳՈՒՋՅԱՆ. Միկրոաշխարհի հրաշագործը . 28
Հ. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ. Լեռների հավատարմությունը . 30
Ի. ԳԱՄԱԶԿՈՎԱ. Ձյունե տղան . . . . 30
Ս. ՋԵՐՋԵՐՅԱՆ. Հարցուպատասխան . . 32
Ե. ՊԵՏՐՈՍՅԱՆ. Շախմատային թագավորի և թագուհու մասին . . . . 32
ՊԱՏԿԵՐԱՍՐԱՀ

Հանձնված է տպագրության 27.VI.1986 թ.: Ստորագրված է տպագրության 19.VIII.1986 թ.: ՎՖ 06859: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 69182: Պատվեր 1337: Գինը՝ 15 կոպ.:

Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:

Сдано в набор 27.VI. 1986 г. Подписано к печати 19. VIII.1986 г. Формат 70×100 1/16. ВФ 06859. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 69182. Заказ 1337. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе. 2.

Շապիկի առաջին էջը՝
ԱԼԵՔՍԱՆԴՐ ԱԼԱՋՅԱՆԻ

## ՈՒՍՈՒՑՉԻ ՕՐԱԳՐԻՑ

ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

### ԿԱՄՈՒՐՋ ՉՀԱՆԴՈՒՐԺՈՂ ԳԵՏԸ

Հերթականությամբ կարդալով ազգանունները, անգիր եմ հարցնում Պատկանյանի «Արաքսի արտասուքը» բանաստեղծությունը:

Տղան, որից ես չէի սպասում, բարձր ոգևորությամբ արտասանում է, ես հանկարծակիի եկած դառնում եմ նրան.

— Այս ի՞նչ է պատահել...

Տղան թախծոտ ժպտում է.

— Ասե՞մ ինչ են նշանակում հետևյալ տողերը.

Ի՞նչպես մնաց էն օրից,
Ո՞ր ջրամոտ գեղերս..

— Ասա:

— Այդ ջրամոտ գեղերից մեկն էլ մեր նախնյաց գյուղն է, որն հիմա ավեր ու ավերակ մնում է Արաքսի այն ափին...

Հետո տղան շարունակում է արտասանել. «Մեր դարերից, մեր սարերից ու մեր սրտից կիջնես, Արազ...»: «Արազն եկավ լափին տալով...», «Արազ, տակդ մի փորե, առանց այն էլ շատ խոր է...», ու վերջում.

Ա՜խ, ես ի՞նչ ասեմ անսիրտ Արազին,
Որ սիրտս կիսած անցնում է միջով:

Ես մնացել էի ապշած.տղան ոտքի վրա կազմեց գրական մի գողտրիկ կոմպոզիցիա՝ «Արաքս» վերնագրով... Կոմպոզիցիա, որով նա մրսած կարմրախայտի պես ինքն իրեն մղելով Արաքսն ի վեր, գնում էր դեպի իր Բյուր ակունքներից մեկը...

Ինչո՞վ բացատրել այս հրաշքը:

Ահա թե ինչով: Տատը պատմել է տղային.

— Այն գյուղը, որտեղից եկել են մեր պապերը, եղել է ոչ մեծ մի գետի ափին... Գետը շատ ձկնառատ է եղել, ջրերը՝ սառն ու զուլալ...

Տատը պատմել է, բայց չի ասել, թե ինչ է այդ գետի անունը... Ու մի օր էլ «Հայ ժողովրդի պատմություն» գրքի քարտեզի վրա տղան տեսնում է իրենց գյուղը:

— Աստված իմ,— ճչում է տղայի հոգին,— ահա մեր գյուղը... Մեր գյուղը Արաքսի ափին, Սերմանց սարի տակ... Ուրեմն տատիս ասած ձկնառատ գետը Արաքսն է իր վերին հոսանքում...

Ու այդ օրվանից տղայի համար աշխարհի ամենաերկար գետը, աշխարհի ամենաջրառատ գետը Արաքսն է որ կա:

... Արաքսը... Կամուրջ չհանդուրժող Արաքսը....

— Ահա թե ինչու,— գլուխ է անում տղան,— մեր գյուղացիները Փարվանա գետը կոչում են Արազ...

Ահա թե որտեղից է սկսվում Արաքսը:

### ԵՐԱԶԱՆՔԸ

Երկուսով ներկայացան իմ դասին:

Տղաներից մեկն ասում է. «Կգա օրը, երբ Արևմտյան Հայաստանը կանցնի իր տիրոջ ձեռքը, ես հավատում եմ այդ օրվան»:

Ընկերը հակառակն է պնդում. «Մենք երբեք էլ դա չենք տեսնի, թուրքերն այնտեղ փոխել են նույնիսկ հայկական անունները»:

—Թեկուզ դուք էլ նրա ասածն ասեք,— դառնում է ինձ վերջինս,— մեկ է, ես չեմ հավատա:

— Ձեր վեճի մեջ կա մի շատ կարևոր բան,— ասում եմ ես,— մեկդ երազանք ունի, մեկդ՝ ոչ: Ես, անշուշտ, երազանք

ունեցողի կողմն եմ։ Ինձ թվում է՝ իր մեջ եղած երազն է, որ քանծին տարբերում է մեռածից։

Երազանք ունենալ... Թվում է, թե ոչինչ չունես, բայց շատ բան ունես։

Երազանք չունենալ... Թվում է, թե ոչինչ չի պակասում, բայց շատ բան չունես։

## ՀԱՎԱՏ ԵՎ ՎՍՏԱՀՈՒԹՅՈՒՆ

Ամեն անգամ, երբ խոսք է լինում հավատի ու վստահության մասին, ես հիշում եմ ֆիզիկայի իմ ուսուցչին։

Ութերորդ դասարանում էի։ Դպրոցը տեղափոխվում էր նորակառույց շենքը։ Պետք է տեղափոխվեր ֆիզիկայի կաբինետը։ Նա ինձ վստահությամբ կանչեց ու ասաց, որ ես գտնեմ էլի մի ընկեր ու կաբինետի իրերն ու գործիքները բարձենք ավտոմեքենան, տեղափոխենք դպրոցական նոր շենքը։ Ես էլ իմ վստահելի ընկերոջը կանչեցի։

Իրերը տեղափոխելու ժամանակ խելքներիս փչեց գործիքներից որոշ բաներ՝ ոսպնյակներ ու էլեկտրական փոքրիկ սարքեր, յուրացնել։ Եվահա նոր դպրոցում ֆիզիկայի դաս էր։ Ուսուցիչը եկավ դասի։ Հինը հարցնելուց ու նոր դասը տալուց հետո նա գրպանից հանեց մի լրագիր ու մեզ համար կարդաց մի հոդված՝ չարաշահված վստահության ու խաթարված հավատի մասին։ Հետո նա վերարկուի գրպանից հանեց ոսպնյակների դատարկ տուփն ու բացելով դրեց սեղանին։

Նա իմ երեսին նայեց որպես վստահելի աշակերտի, ես նայեցի իմ վստահելի ընկերոջ երեսին։ Մենք երկքով լռությամբ իրար երես նայեցինք։ Մնացածները ոչինչ չհասկացան։

Ես գրպանիցս հանեցի ոսպնյակն ու դրեցի դատարկ տուփի մեջ։

Աչքերիցս արցունքներ ընկան։ Ուսուցիչը ժպտաց.

— Ես կրկին վստահում եմ քեզ...

Իսկ ես մինչև հիմա մտածում եմ՝ արդյո՞ք նա ինձ հավատում ու վստահում է առաջվա չափ։

## ԱՄԵՆԱԼԱՎԸ

Տարեվերջին, երբ աշակերտների խնդրանքով դասը դրսում էի անցկացնում, աշակերտուհիներից մեկն ինձ հարցրեց, թե ով է իմ ամենալավ աշակերտը եղել ուսուցչության բոլոր տարիների ընթացքում։ Ես առանց դժվարանալու տվեցի իմ ամենալավ աշակերտուհու անունը։

— Հիմա ի՞նչ է անում,— անմիջապես հարցրեց աղջիկը։

— Աշխատում է կարի ֆաբրիկայում։

— Իսկ ինչո՞ւ գրականագետ կամ գրականության դասատու չդարձավ,— գրոհով շարունակեց աղջիկը։

— Դժվար հարց ես տալիս,— տագնապեցի ես,— առաջին տարին հայերեն գրավոր և բանավոր քննությունները հանձնեց, բայց գերմաներենից կտրվեց։ Խնդրեց ինձ իր հետ գերմաներեն պարապել։ Պարապեցի, այդ տարին գերմաներենից էլ լավ գնահատական ստացավ, այս անգամ էլ պատմության առարկան խանգարեց...

— Իսկ նրանից թույլերը չկայի՞ն, որ ընդունվել են...

— Կային...,— ասացի ես,— քեզ այդպիսիների օրինա՞կն է գրավում։

— Ոչ... ոչ...,— ասաց նա։

— Քո առաջադիմությամբ պետք է ինձ համոզես, որ ոչ... ես այս խոսակցությունը չեմ մոռանալու, դու նույնպես չմոռանաս։

Եվ չմոռացա ես, ավելի խստապահանջ դարձա նրա նկատմամբ։ Չէր կարող մոռանալ նաև ինքը՝ ստիպված էր ավելի ջանասիրություն հանդես բերել։

## ՀՐԱՇԱԼԻ ՊԱՀ

Գրավոր աշխատանքի համար նոր տետրեր էին պետք, վեց-յոթ աշակերտ չունեին տետրեր։

Սլավիկը ձեռք բարձրացրեց.

— Գնամ բերեմ...

— Գնա, ձեր տունը մոտիկ է, գնա մի քանի տետր բեր, տուր ընկերներիդ, հետո կտան,— ասացի ես, ու տղան դուրս վազեց։

Քիչ հետո եա եկավ տետրերը թևի տակ։ Բաժանեց տետրերն ու վերջինը պահեց իրեն։ Պարզվեց, որ էլի մի աշակերտ մնաց առանց տետրի։ Նա ձեռքը պարզել էր Սլավիկի կողմը։ Սլավիկը մի պահ մտատանջության մեջ ընկավ, բայց երկար չտևեց։

— Առ, սա էլ քեզ,— տվեց տետրը ընկերոջը, հետո մի տեսակ ինքնամոռաց ու զուլալ հայացքով երեսիս նայեց ու ժպտաց մեղավորի պես։

Ես ուզեցի համբուրել նրան։

Հրաշալի կլիներ, եթե ինքնամոռացման այդպիսի պահեր շատ լինեին ամեն մարդու կյանքում։

ՍՏԵՓԱՆ ՋԱՔԱՐՅԱՆ

# ՀԱՄԲԵՐՈՒԹՅԱՄԲ ՍՊԱՍՈՒՄ Է...

Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

Արտակը ծնված օրվանից էր անհամբեր: Մայրը պատմում էր, որ երբ դեռ ծըծիչով էր կաթ խմում ու մի անգամ ծծիչի անցքը փակվեց, ուրիշ երեխաների պես լաց լինելու փոխարեն, քաշեց, հանեց ծծիչը ու շիշը տարավ բերանը: Քիչ մընաց խեղդվեր:

— Երեք-չորս տարեկան էր. «Կարմիր գլխարկն» էի պատմում,— հիշում է տատը:— Հազիվ էր գայլը տատիկի մասին տեղեկանալով՝ բաժանվել աղջկանից, Արտակը վազեց մյուս սենյակ: Գնամ, տեսնեմ՝ կանգնել է աթոռի վրա, հոր որսորդական հրացանն է ուզում պատից իջեցնել... Կընկնես, այ տղա, կընկնես,— ձայնում եմ ես, նա թե՝ թող, գնում եմ գայլին սպանեմ:

— Դե նա ո՞ր պատմությունն է մինչև վերջ լսել,— ակնոցն էր ուղղում պապը:— Նույնիսկ երբ Թումանյանի հեքիաթներն էի կարդում, հոլի պես պտըտվում էր շուրջս ու անընդհատ հարցնում՝ հետո՞... հետո՞... վերջը, վերջում ի՞նչ է լինում...

— Ձեռքն առած գրքի սկիզբն է միայն կարդում ու վերջը,— ավելացնում է քույրը:

— Չէ, մարդ չի դառնա,— գլուխը օրորում էր հայրը:

Հայրն այդպես ասում էր, բայց հույսը չէր կորցնում, որ նրանից մի բան դուրս կգա: Տղան մինչև հինգից վեցերորդ դասարան զոռով, շառով, վերաքննությունով տեղափոխվեց: Մի օր որոշեց գրող դառնալ, որովհետև հայ գրականության դասագրքում տեսավ գրողների նկարները տպված և նկարների տակ նրանց մասին մեծ-մեծ ու լավ-լավ բաներ գրված: Մինչ այդ էլ ինչ նախասիրություն ասես որ չէր ունեցել, կիթառով հրապուրվեց, ապա՝ շախմատով և ապա՝ ջրացատկով:

Կիթառից հրաժարվեց կիթառ ունենալուց կես ժամ հետո: Նախ, հինգ րոպե ծնգծնգացնելուց հետո մատների ծայրերը սկսեցին ցավել: Զանգահարեց կիթառի դասերի գնացող իր հորեղբորորդի Աշոտին, որը խորհուրդ տվեց քիչ-քիչ պարապել, մինչև մատների ծայրերի կաշին ամրանա: Դա Արտակին ոչ մի կերպ ձեռք չէր տալիս, որովհետև որոշել էր տասնըհինգ օր հետո «Բիթլզների» բոլոր երգերը կիթառով նվագել: Երկրորդ՝ նա հորից էլեկտրական կիթառ էր խնդրել, բայց հայրը խոստացել էր պայմանով, որ նա հասարակի վրա նվագել սովորի, հետո անպատճառ էլեկտրական էլ կունենա: Եվ Արտակը երաժշտական գործիքների խանութից տուն հասնելուն պես ապարդյուն փորձում էր հասարակ կիթառից էլեկտրականի ձայն հանել, և կես ժամ հետո կիթառի վրա ոչ մի լար չմնաց:

Ծուն պահելու ցանկություն նա ունեցավ, բայց հրաժարվեց դեռ շուն չունեցած, երբ հորեղբորորդի Աշոտից տեղեկացավ, որ շանը, այն էլ ընդունակ շանը, բավականին ժամանակ է պետք, մինչև վարժվի տիրոջը, սովորի նրա հրամանները կատարել:

Իսկ շախմատի պատմությունը մի քիչ ուրիշ էր: Քայլերը սովորելուց անմիջապես հետո հորը հարցրեց.

— Ո՞ւմ պիտի հաղթեմ, որ աշխարհի չեմպիոն դառնամ:

— Աշխարհի չեմպիոնին,— պատասխանեց հայրը:

— Դե, էլ գնանք:

— Ո՞ւր:

— Աշխարհի չեմպիոնի հետ խաղալու,— իր հաղթանակի վրա վստահ՝ ասաց Արտակը:

— Աշխարհի չեմպիոնի հետ խաղալու համար պետք է իրավունք նվաճես,— բացատրեց հայրը:

— Ինչպե՞ս,— զարմացավ նորաթուխ «գրոսմայստերը»:

— Պետք է հաղթես բոլոր հավակնորդներին: Հավակնորդ լինելու համար պետք է հաղթես փնջային մրցաշարում, փնջային մրցաշարում խաղալու համար՝ միջփնջայինում, միջփնջայինում խաղալու համար...

Եվ շախմատի հարցն էլ փակվեց: Հաջորդը՝ ջրացատկն էր: Բայց մինչև ջրացատկով հրապուրվելը Արտակը հրապուրվեց համադասարանցի Աստղիկով... Նա այդ մասին ասաց իրենից չորս տարով մեծ իր միակ քրոջը՝ Արուսիկին, որն



այն ժամանակ սովորում էր իններորդ դասարանում և, Արտակի կարծիքով, աշխարհի ամենախելացի աղջիկն էր, որովհետև շատ էր կարդում:

— Համոզվա՞ծ ես,— նրան լսելուց հետո հարցրեց Արուսիկը:

— Ի՞նչ կա կասկածելու, նա մեր դասարանի ամենագեղեցիկ ու ամենաընդունակ աղջիկն է:

— Ընդունա՞կ:

— Դասատուներն են այդպես ասում:

Արուսիկը խորասուզվեց մտքերի մեջ ու խորասուզված հարցրեց.

— Ձեր դասարանի՞ց է, ասում ես...

— Բա էլ որտեղի՞ց,— զարմացավ Արտակը:

— Ուրեմն, նրան տեսած պետք է լինեմ,— աչքերը կկոցած շարունակեց քույրը:

— Իհարկե, ծնունդիս եկել էր: Դե, ո՛նց նկարագրեմ, ամենագեղեցիկ աղջիկն էլի, գեղեցիկ, կապույտ շոր էր հագել... դաշնամուր էր նվագում ու Պուգաչովայի երգն էր երգում մաեստրոյի մասին... Դու էլ ասացիր՝ ավելի լավ է բոլորով մի ուրախ, հայկական երգ երգենք:

— Հա՜, հիշեցի: Մի քիչ...,— ծոր տըվեց Արուսիկը:

— Մի քիչ ի՞նչ,— չդիմացավ Արտակը:

— Աչքիս մի քիչ գոռոզ երևաց, բայց ո՛նց որ թե լավիկն էր:

— Առանց ո՛նց որ թե-ի... հաստատ լավիկն է: Դու ինձ ասա, թե ես ի՞նչ անեմ,— հուզվեց Արտակը:

— Սպասիր, տես...

— Ինչի՞ն սպասեմ:

— Որպեսզի համոզվես՝ ճի՞շտ է զգացածդ, թե քեզ է թվում:

— Հետո, երբ համոզվում ես, որ ճիշտ է, ի՞նչ ես անում:

— Սպասում ես:

— Ինչի՞ն ես սպասում:

— Որպեսզի համոզվեն՝ արդյո՞ք ըզգացմունքը փոխադարձ է, թե ոչ:

— Հետո ի՞նչ ես անում:

— Ո՞ր դեպքում:

— Ասենք, երբ զգացմունքը փոխադարձ է:

— Խոստովանում ես:

— Հետո՞:

— Եթե քեզ համար ես հարցնում, նորից սպասում ես:

— Ինչի՞ն:

— Որ դպրոցը ավարտեն, համալսարան ընդունվեն, համալսարանը ավարտեն..

Արտակն, իհարկե, սպասել չէր կարող: Հաջորդ օրը երկար դասամիջոցին Աստղիկին մի կողմ կանչեց, զգացածն ասաց:

Աստղիկը սկզբում կարմրեց, հետո սկսեց ծիծաղել, հետո լեզու հանեց ու փախավ:

Արտակը դպրոցից շատ տխուր տուն դարձավ, և երբ Արուսիկի հետ երկուսով էին, հարցրեց.

— Արուսիկ, իսկ եթե զգացմունքը փոխադարձ չէ, ի՞նչ են անում:

— Բա որ ասում էի՝ աչքիս գոռոզ երևաց,— ծիծաղեց Արուսիկը, հետո Արտակի վհատ տեսքին նայելով, նրան խղճաց,— մի քիչ համբերի, մի բան կմտածենք:

Այդ օրը հեռուստացույցով աշտարակացատկի Եվրոպայի առաջնությունն էին ցուցադրում: Արտակը նայեց, նայեց ու միտք հղացավ: Արուսիկի հետ դարձյալ առանձնացան:

— Արուսիկ,— ասաց,— եթե ես ջրացատկի Եվրոպայի չեմպիոն դառնամ ու Աստղիկը հեռուստացույցով տեսնի, իմ վրա ուշադրություն կդարձնի, չէ՞:

Արուսիկը մտածեց, աչքերը կկոցած՝ երկար մտածեց, և երբ Արտակի համբերությունն արդեն հատել էր, խոսեց.

— Իմ կարծիքով, քո այդ Աստղիկը հենց այդպիսի մեկին է սպասում: Եթե չեմպիոն դառնաս, իր աչքում հաստատ ուրիշ կերևաս:

Մյուս օրը Արտակը բռնեց լողավազանի ճամփան: Ջրացատկի մարզիչը նրա հորեղբոր ընկերն էր, նրան անմիջապես ընդունեցին: Բայց պարզվեց, որ ամենաբարձր աշտարակից ցատկելու համար նախ պետք է լողալ իմանալ, ապա ցածր ու միջին աշտարակից ցատկել: Քանի որ Արտակը քաջ տղա էր և որոշել էր Աստղիկի ուշադրությանն արժանանալ ամենակարճ ժամկետում, հենց առաջին օրը, դեռ ջուրը չմտած, բոլորից գաղտնի, բարձրացավ ամենաբարձր աշտարակը, ցատկեց և այնպես չլմփաց ջրի մեջ, որ մաշկը մի քանի օր մրմռում էր, էլ չասած, որ մինչև նրան լողավազանից հանեցին, բավականին ջուր կուլ տվեց, և մարզիչն էլ, թեև հորեղբոր ընկերն էր, արգելեց նրան լողավազանում երևալ:

Այդ ամենից հետո Աստղիկի ուշադրությանն արժանանալու միակ միջոցը հայտնի գրող դառնալն էր: Համոզված էր, որ եթե հայտնի գրող դառնա, ու իր նկարը տպեն իրենց դասագրքում, նկարի տակ գրեն այն ամենը, ինչ գրում են գրողների մասին, Աստղիկի վերաբերմունքը կփոխվի իր նկատմամբ:

Արտակի ճանաչած ամենահիմաստուն ու կարդացած մարդը իր պապն էր, և նա որոշեց պապի հետ խորհրդակցել:

— Պապ,— ասաց,— որոշել եմ հայտնի գրող դառնալ, խորհուրդ տուր, թե ինչպես դառնամ:

Պապը մաքրեց կոկորդը, լավ տեղավորվեց բազկաթոռի մեջ և, ցուցամատը շարժելով, ազդեցիկ խոսեց.

— Նախ պիտի տաղանդ ունենաս, հետո շատ կարդաս, հետո ուշադիր զննես տեսածդ ու լսածդ, հետո գրի առնես այնպես, որ գրածդ իմաստ ունենա, կարդացողին մի բան ասի, մի բան սովորեցնի:

— Ի՞նչ ասի:

— Այդ դու պիտի մտածես:

— Լավ, այդ ես կմտածեմ, պապ: Դու ինձ ասա՝ վե՞պ գրեմ, թե՞ բանաստեղծություն: Ո՞րն է հեշտ: Ո՞րը գրեմ, որ շուտ հայտնի դառնամ:

— Թե ո՞րն է հեշտ, դժվարանում եմ ասել: Բայց որ վեպ չես կարող գրել, այդ մեկը հաստատ է: Համբերություն չունես:

— Լավ, պապ, բանաստեղծություն կգրեմ: Իսկ բանաստեղծությունից կարճ ուրիշ ի՞նչ կա:

— Բանաստեղծությունից կարճ կա կարճ բանաստեղծություն՝ քառյակ կամ ասացվածքներ, հանելուկներ, թևավոր խոսքեր...

— Դա՞ ինչ բան է,— զարմացավ Արտակը:

— Ինչպե՞ս բացատրեմ, որ հասկանաս,— հոնքերը կիտեց պապը:— Ավելի լավ է օրինակ բերեմ. «Համբերությունը կյանք է»:

— Ի՞նչ է,— աչքերը ճպճպացրեց Արտակը:

— Կյանք է, կյանք:

— Չհասկացա, պապ:

— Մինչև չհասկանաս, գրող չես դառնա:

Արտակը սկսեց մտածել... Մտածեց մեկ օր, երկու օր... և գրող դառնալու թարկն էլ տվեց: Ջահիլ չուներ:

Եվ ամեն բան թողեց ինքնահոսի, հույս ունենալով, որ մի գեղեցիկ օր կքնիկարթնանա մեծ, նշանավոր մարդ դառած, և բոլոր լավ սովորող ու գեղեցիկ աղջիկները կտարվեն իրենով, Աստղիկն էլ նրանց հետ: Մնում էր սպասել այդ օրվան... Ահա, այստեղ նա համբերություն ունեցավ և սպասում է...

**ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ**

# Ծնունդ

Մեր աչքերը
Մայրիկները գտել են լույս մարգագետնից
Մի առավոտ
Կաթիլներ են եղել ցողի:

Մեր այս փափլիկ թաթիկները
Հին ժամանակ
Ծաղ են եղել՝ ճերմա՜կ-ճերմակ:
Մայրիկները շատ են խնդրել,
Որ նրանք գան
Ու մեզ համար ձեռքեր դառնան:

Մեր մազերից ամեն մեկը
Շողն է եղել արեգակի,
Մայրիկները, ձեռքերն իրենց կրակ տալով,
Մի սիրուն օր
Հավաքել են բաց երկնքից:

Իսկ մեր ձայնի համար նրանք
Յոթը սար ու ձոր են անցել,
Հասել աշխարհն հեքիաթների,
Երգն են լսել կախարդական առվակների...

Մեր սրտերը
Թիթեռներ են եղել առաջ
Ու քանի որ մեն-մի օր են
Թիթեռները այս աշխարհում ճախրում-
ապրում

Ու իրիկվա ցրտին հանգչում,—
Մի երեկո, որ չընդհատվի կյանքը իրենց,
Նրանք զգույշ
Իջել են մեր մայրիկների ափերի մեջ,
Մայրիկներն էլ թիթեռներն այդ
Մեր կրծքերի մեջ են պահել՝
Տաքուկ-տաքուկ՝ որպես սրտեր...

Այսպես՝ ամեն տեղից կաթ-կաթ՝
Ծաղիկներից ու ծառերից,
Ծիածանից ու աստղերից,
Հողի սրտից,
Գարնան ամպից,
Տիեզերքից
Հավաքել են ու հավաքել,
Մի իրիկուն տուն են բերել...

Հետո, երբ որ գիշերն անցել,
Արեգակը երգել է երգ,
Բարին հետը լույս է բացվել,
Եվ լույսի հետ ծնվել ենք մենք:

# Աստղաթափ

Աստղ ընկավ մթան մեջ՝
Կայծոռիկ դարձավ,
Աստղ ընկավ ծովի մեջ՝
Մարգարիտ դարձավ,
Աստղ ընկավ դաշտի մեջ՝
Ծաղկին շաղ դարձավ,
Աստղ ընկավ աչքի մեջ՝
Երազանք դարձավ,
Աստղ ընկավ գիրկը մոր՝
Դարձավ լույս մանուկ,
Մանկան սիրտն աստղ ընկավ՝
Դարձավ երգն այս լուռ...

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



Հեքիաթ սիրող երեխաներին հայտնի է, որ անցյալում գտնվել է մի կախարդական գլխարկ, և ով այն հագել է, դարձել է անտեսանելի: Եվ բախտավոր ու երանելի է համարվել նա, ով տիրել է այդ կախարդական գլխարկին: Հետագայում պարզվեց այդ կախարդանքի գաղտնիքը և նույնիսկ կառուցվեց ֆաբրիկա, որը արտադրեց անտեսանելի դարձնող գլխարկներ: Մարդիկ տեղի-անտեղի օգտագործում էին այդ գլխարկները, և շատ չանցած երկրագնդի վրա ամեն ինչ դարձավ անտեսանելի: Երկրագունդը ամայի կերպարանք ընդունեց: Նույնիսկ այդ ֆաբրիկան էլ անհետացավ, որովհետև մի կատակասեր երեխա գլխարկներից մեկը գցեց դրա ծխնելույզի վրա: Հետո այդ երեխան փորձեց արեգակի վրա նետել այդպիսի գլխարկ, բայց գլխարկը կես ճանապարհին այրվեց, մոխրացավ: Ու, փաստորեն, ամայացած երկրագնդից բացի մնացին արեգակը, լուսինը և աստղերը, որոնք անտեղի լուսավորում էին անտեսանելի դարձած մարդկանց, նրանց տները, գետերն ու ծովերը:

Եվ այսպես, երկրագնդի վրա տիրեցին միայն ձայներ և խշշոցներ, փսփսոցներ, կարկաչյուններ, խրթխրթոցներ, ռռնոցներ, մլավոցներ, խրխինջներ, հաչոցներ, քրքիջներ, հեծկլտանքներ, ամեն, ամեն լսելիք, բայց ոչ մի տեսանելիք: Ձայն էին առնում, ձայն էին տալիս, աշխույժ ձայնառնտուր էր գնում: Ձայնի արտադրությունն ավելանում էր կամ պակասում: Պայքար էին մղում աղմուկի դեմ: Լռությունն ավելի բարձր էին գնահատում, քան առաջ: Եվ երբ մարդ ուզում էր հեռանալ կամ բացակայել, պարզապես լռում էր: Երեխաները դադարել էին պահմըտոցի խաղալ, որովհետև բռնել չէր լինում, կամ շատ դժվար էր, համարյա անհնարին: Այդ համատարած անտեսանելիության մեջ պետությունների միջև սահմանները վերացան, և ժողովուրդները ձուլվեցին իրար: Այդ պատմաաշխարհագրական ժամանակաշրջանում էր, որ ծնվեց Կա-չկա դարձվածքը: Եթե ասեմ, որ նա մարդու տեսք ուներ, դա նշանակություն չունի, որովհետև տեսք ունենալու համար պետք է գոնե տեսանելի լինել: Այդ Կա-չկան շատ ճարպիկն էր, ու շատ ժամանակ անցավ թե քիչ, ի վերջո նա դարձավ ամբողջ երկրագնդի թագավոր: Նա բոլորին ղեկավարում էր հեռախոսով, որը նույնպես անտեսանելի էր: Այդ նա էր, որ կարգադրեց դպրոցներում վերացնել դասագրքերը, և դասավանդումը տեղի էր ունենում մագնիտաֆոնով ու նվագարկիչով: Դասարանում, քննությունների ժամանակ հուշողներին, փողոցում կամ այլուր վատ խոսք ասող-




Նկարը՝ ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

ներին, վատ արարք անողներին ձայնազուրկ էին անում, դատապարտում էին լռության՝ նրանց տեղավորելով դիսկոտեկում, որտեղ անընդհատ նվագում էին բարձրահնչյուն, թեթև երաժշտություն: Պատժվողները սկզբում ուրախանում էին, բայց երկու ժամից հետո այդ երաժշտությունը նրանց վրա ծանրանում էր, նրանք հոգնում էին այդ աղմուկից, որը նույնիսկ թույլ չէր տալիս, որ իրենք արտահայտվեն: Այդ անտեսանելի աշխարհում, որտեղ աղմուկը սոսկալի պատիժ էր, անուշ մեղեդու համար հոգի էին տալիս: Նոր տարում կամ զատկին իրարու հյուրասիրում ու նվիրում էին ճյուղերի խըշշոցներ, թռչունների ծլվլոցներ, առվակի քչքչոցի ձայնագրությունները:

Կա-չկա թագավորը բարի էր և իմաստուն: Նա շատ չէր գոռգոռում և իր հըպատակներին պարգևատրում էր քայլերգերով ու ձոներգերով: Մի անգամ նա հեռախոսի համարը պատահաբար սխալ հավաքեց և լսեց մի աղջկա անծանոթ ձայն: Այդ ձայնն այնքան հմայիչ էր ու գեղգեղուն, որ Կա-չկան տեղնուտեղը կախարդվեց ու սիրահարվեց:

— Ո՞վ ես դու,— հարցրեց նա հնիհն,— ես Կա-չկա թագավորն եմ:

— Ես քեզ ճանաչեցի: Ռադիոյից ես քեզ գիտեմ,— պատասխանեց աղջկա ձայնը,— Ես Չկա-կան եմ Արվեստի գերդաստանից:

— Չկա-կա, դու սքանչելի ձայն ես,— ասաց թագավորը,— ես քեզ հետ անպայման զուգերգ պիտի երգեմ:

— Քո ձայնը նույնպես ինձ դուր է գալիս,— ասաց Չկա-կան:

— Ես քեզ ձայնանիշերի հսկայական փունջ պիտի ուղարկեմ,— խոստացավ Կա-չկան,— ու նաև՝ զգացմունքառատ հարսանեկան երգ:

— Այսօր իմ կյանքի ամենաերջանիկ օրն է,— ասաց Չկա-կան, և քիչ էր մնում յաց լինի խանդաղատանքից:

— Երջանկությունը,— ասաց Կա-չկա թագավորը,— ինձ եկավ հեռախոսային ցանցի գերազանց աշխատանքի շնորհիվ: Ես այդ ցանցը պարգևատրելու եմ տասը հազար հեռախոսային պատվո զնգոցով:

Կա-չկան ժամադրվեց Չկա-կայի հետ: Նրանք շատ հաջող զուգերգ երգեցին, ապա տեղի ունեցավ թագավորական հարսանիքը ֆիլհարմոնիայի մեծ դահլիճում, որտեղ յոթ օր, յոթ գիշեր մատուցեցին նոխ ձայնկերույթ: Հրավիրված էին աշխարհահռչակ կոմպոզիտորներ ու դիրիժորներ, ջութակահարներ ու դաշնակահարներ, երգիչներ ու երգչուհիներ: Բոլորին նվիրեցին երաժշտական գոհարներ, բաժանեցին կոնցերտներ ու բալլադներ, սոնատներ ու ռապսոդիաներ, սիմֆոնիաներ ու օպերաներ: Հետո հերթը հասավ նոր ձայնատեսակների՝ վալսեր ու տանգոներ, ջերկեր ու ռոկնռոլ, ֆոքստրոտ ու չաչաչա: Այդպիսի հարսանիք չէր լսել երաժշտական աշխարհը:

Կա-չկան և Չկա-կան իրար փաղաքշեցին, շշնջացին, քրքջացին, երջանիկ ապրեցին, ունեցան երկվորյակ արու զավակներ: Մեկի անունը դրին Կա, մյուսինը՝

Չկա: Կաև և Չկաև դեռ մանուկ օրերից իրար հետ վիճում ու կռվում էին: Երբ մեծացան, մեծացան նաև նրանց միջև եղած գժտությունները: Նրանցից ամեն մեկը կազմեց մի-մի բանակ, և սկըսեցին պատերազմել իրար դեմ: Ծնողները՝ Կա-չկան և Չկա-կան, անասելի ջանքեր թափեցին՝ նրանց իրար հետ հաշտեցնելու համար, բայց իզուր: Եվ այդպես աշխարհում շատացան տնքոցները, հեծկլտանքները, հոգոցները, տարածվեցին հազերը, մղկտոցները, նվոցները: Պատերազմն այնպես էր տեղի ունենում, որ չէին ջոկում, թե ով ում բարեկամն է կամ թշնամին: Տերը շանը չէր ճանաչում: Մարդիկ արդեն սկսում էին անիծել իրենց անտեսանելիությունը, բայց չէին կարողանում ազատվել կախարդական գլխարկներից, որոնք կպել էին նրանց գլուխներին: Նրանք հիշում էին երանելի, տեսանելի անցյալը: Ախր անտեսանելիությունը շատերին հնարավորություն էր տալիս անպատիժ մնալու, և նրանք չէին դիմանում չարիք անելու գայթակղությանը: Իսկ ձայները որսալու և իրարից տարբերելու գործը շատ էր դժվարացել, որովհետև մարդիկ կեղծում էին իրենց ձայնը: Դիսկոտեկները լեփլեցուն էին անմեղ-մեղավոր ձայնագրիչներով: Կա-չկա թագավորը չգիտեր՝ ում պատժի, ում չպատժի: Կայի՞ թե Չկայի կողմնակիցներին: Մի խոսքով, աշխարհում տիրեց իսկական կակաֆոնիա: Կա-չկան հուսահատվեց և մի մութ գիշեր վերցրեց Չկա-կային ու թռավ տիեզերք: Թագավորական պահապանները փորձեցին ռադիոալիքներով նրանց բռնել ու ետ բերել: Դա նրանց չհաջողվեց, որովհետև Կա-չկան և Չկա-կան շատ էին հեռացել: Նրանց հյուրընկալեց մի տեսանելի մոլորակի վրա ապրող Կլինի-չի լինի թագավորը, որը նրանց պատվին կազմակերպեց տեսանելի խնջույք:

Իսկ երկրագնդի վրա այդ կակաֆոնիան դեռ երկար կշարունակվեր, եթե չլիներ անգլխարկ, տեսանելի Արեգակը, որը մաշեց կախարդական գլխարկները: Աստիճանաբար բոլորն ու ամեն ինչ դարձավ տեսանելի, մոտավորապես այնպես, ինչպես կինոնկարի վերջում լուսավորվող դահլիճում: Այս հեքիաթն էլ, որ ռադիոյից հնչեց, հետո դարձավ տեսանելի գիր, աշխարհում կարգ ու կանոնը նույնպես դարձավ տեսանելի:





# ԶՐՈՒՅՑՆԵՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ

**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ՏԱՍՆԵՐԵՔԵՐՈՐԴ

## Սարդուր, Իշպուհինի, Մենուա

Ասորեստանի ծերացած թագավոր Սալմանասար III-ը տեսնելով, որ Արամի շնորհիվ Արարատի հայոց թագավորությունը շատ է հըզորացել և իր հովանու տակ է առել Հայքի շատ մասերը, իր զորավար Դայանաշուրին մեծ զորքով ուղարկեց դեպի հյուսիս՝ Արա-

բատը հնազանդեցնելու։ Սալմանասարի արձանագրություններից իմանում ենք, որ այդ ժամանակ Վանում իշխում էր Սեդուր կամ Սարդուր (Սարդուրի) անունով հայոց թագավորը։

Արձանագրությունների մեջ Արամը հիշվել էր Դայյանաշուրի այդ արշավանքից 12 տարի առաջ։ Ռոհասարակ, Վանի թագավորներից ամեն մեկն իր նախորդի որդին է եղել։ Բայց այս դեպքում դժվար է ասել, թե Սարդուրն Արամի որդի՞ն էր, թե՞ թոռը։

Մենք արդեն գիտենք, որ այս Սարդուրը հայոց թագավորներից առաջինն էր, որը սեպագիր արձանագրություններ գրել տվեց։ Ահա, իր արձանագրությունների մեջ նա իրեն անվանում է Լուտիպրի (Լուտիպրիի) որդի։ Որոշ գիտնականներ այն կարծիքին են, որ **Լուտիպրին** կամ **Լուտիպրը** Արամի անուններից մեկն է եղել կամ մականունը։ Հնում մի թագավորը հաճախ երկու, երեք և ավելի անուններ էր ունենում, նաև՝ մականուն։

Քանի որ հետագայում Վանում իշխել են Սարդուր անունով նաև ուրիշ հայ թագավորներ, ուստի Արամի որդուն (կամ թոռանը) անվանում ենք Սարդուր I։

Սա շինարար էր։ Կառուցեց ամրոցներ, նաև Վանի քարաժայռի մոտ մի շինություն հսկա քարերով։ Այդ քարերից մեկի վրա նա փորագրել տվեց ասուրաքաբելերեն արձանագրություններ։ Ահա նրանցից մեկը՝ թարգմանված հայերեն. «Սարդուրի՝ Լուտիպրի որդու արձանագրությունն է, մեծ թագավորի, հզոր թագավորի, աշխարհի թագավորի, Նաիրի երկրի թագավորի, որի հավասարը չկա, զարմանալի հովվի, որ չի վախենում ճակատամարտից, այն թագավորի, որը բոլոր թագավորներից տուրք է ստացել։ Այսպես է ասում Սարդուրը՝ Լուտիպրի որդին»։

Այստեղ մենք, իհարկե, նկատում ենք, որ հայ թագավորը մասամբ ընդօրինակել է ասուրաքաբելական գոռոզ ոճը, որը գործածում էին նաև հարևան այլ երկրների թագավորներ, և հետո էլ հայ հաջորդ թագավորները գործածեցին։ Բայց կարևոր է այն, որ Սարդուրն արդեն մեծ թագավոր էր, որին ենթակա էին Հայքի ուրիշ մանր թագավորներ։

Իսկ Ասորեստանում գրված Սալմանասար III-ի արձանագրությունը մեզ պատմում է Արածանի գետի մոտ Դայյանաշուրի և Սարդուրի զորքերի ճակատամարտի մասին։ Գրված է, որ իբր Ասորեստանի զորքերն են հաղթել, բայց դա ճիշտ չէ, քանի որ այդ զորքերը Արածանիից հյուսիս չեն անցել։ Եթե իրոք հաղթեին, կանցնեին հյուսիս, դեպի Հայքի խորքը։ Պարզ է, որ Սարդուրն իր զորքով Արածանիի մոտ ետ է շպրտել Դայյանաշուրի ասորեստանյան զորքերը։ Սալմանասար III-ի այդ արձանագրության մեջ կարդում ենք. «Հայ Սեդուրը հույսը դրեց իր մեծաքանակ զորքի շատության վրա»։ Սա նշանակում է, որ հայոց զորքը արդեն շատ մեծ էր։

Դրանից հետո երկար ժամանակ Ասորեստանի զորքերը ասպատակում և կողոպտում էին Արարատի թագավորության միայն հարավային շրջանը, որ կոչվում էր Խուբուշկիա։ Հյուսիս՝ դեպի Վան-Տոսպ, նրանք չէին համարձակվում շարժվել։

Մ. թ. ա. 825 թ. Վան-Տոսպում գահ բարձրացավ Իշպուհինի (Իշպուինի) թագավորը, որին ասորեստանցիները կոչում էին Ուշպինա։ Սրա ժամանակ Ասորեստանում ներքին կռիվներ կային, և հայոց համար՝ որոշ խաղաղություն։ Իշպուհինին շինարարական գործերով զբաղվեց։ Ապա նա հայոց գահին բարձրացրեց իր երիտասարդ որդուն՝ Մենույային (Մենուին), իսկ ինքը մնաց խնամակալ թագավոր։ Հայր և որդի միատեղ մի շարք արձանագրություններ փորագրել տվեցին։ Դրանցից մեկը, որ գտնվում է Ուրմիո լճի հարավ-արևմտյան կողմում, կոչվում է Քելյաշինի արձանագրություն։ Սալ քարի մի



Հովվի որմհանկար
Արարատի թագավորության ժամանակներից

կողմում գրված է սեպագիր ասուրաբաբելե-րեն, մյուս կողմում միևնույն բանը՝ սեպագիր ռորխուրիերեն: Այս արձանագրությունը շատ է օգնել ռորխուրիերեն լեզուն սովորելուն (աս-ուրաբաբելերենի օգնությամբ):

Արձանագրության մեջ գրված է Հայկ-Հայր աստծուն որպես զոհ (մատաղ) մատուցված հարյուրավոր եզների, հազարավոր այծերի և ուլերի մասին: Հայր ու որդի թագավորները Հայկի տաճարին նաև թանկարժեք նվերներ են մատուցել: Արձանագրությունից իմանում ենք, որ Հայկ աստծու տաճարը գտնվել է Արդինի քաղաքում, որը ասուրաբաբելերեն մասում կոչվում է Մուսասիր: **Արդինի** անունը գիտնականները բացատրում են այսպես՝ **ար**-արմենական, հայկական, **դի** աստված, այ-սինքն՝ հայոց աստված: Իսկ **Մուսասիր** անվան սկզբում տեսնում են հայոց Մուշ քաղաքի ա-նունը: Այս դեպքում Արդինին պետք է գտնը-վեր հայոց Տարոն աշխարհում (Վանա լճից արևմուտք), որտեղ միշտ եղել է հայերի պաշտամունքի կենտրոնը: Բայց շատ գիտ-նականներ էլ ասում են, որ Արդինի-Մուսա-սիրը գտնվել է Ուրմիո լճից հարավ-ար-րևմուտք:

Արարատի թագավորության մեջ ուժեղացել էր Հայկ աստծու պաշտամունքը: Հայերի մյուս աստվածներից էին Թեշիբը (Թեյշե-բան), Շիվան (Շիվինին): Վանի թագավոր-ներն իրենց արձանագրություններն սկսում էին Հայկի փառաբանությամբ, այնպես, ինչպես ասուրաբաբելացիները փառաբանում էին ի-րենց Աշուրին: Ահա մի օրինակ. «Հանուն Հայկ աստծու, տիրակալի, Սարդուրի որդի Իշպուինինին և Իշպուինինի որդի Մենուան այս արձանագրությունը կանգնեցրին: Հայկ աստվածը արշավի ելավ իր զենքով...»:

Հայր ու որդի թագավորները Վան-Տոսպում Մհերի դուռ կոչված ժայռի խորշում մի մեծ արձանագրություն փորագրել տվեցին, ո-րի մեջ թվարկված են Արարատի ամբողջ թա-գավորության մեջ պաշտված աստվածները և թե որին ինչքան եզ, այծ ու ոչխար պետք է զոհ մատուցվի: Այս արձանագրությունից այս-օր մենք իմանում ենք հին հայերի պաշտա-մունքների մասին: Հին աստվածների ամբող-ջությունը կոչվում է դիցարան: Ավելի ուշ հա-յերի դիցարանը մի քիչ փոխվեց՝ պարսկա-կան և հունական դիցարանների ազդեցու-թյամբ:

Մենուան քուրմ էր: Նա դարձավ նաև հա-յոց հզոր թագավոր, որը Արարատի թագավո-րության մեջ միավորեց Մեծ Հայքի շատ աշ-խարհներ:

(շարունակելի)





ՈՒԿՐԱԻՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԵՔԻԱԹ

Երեք եղբայր են լինում: Հերն ու մերը մեռնում են, թողնում սրանց դառն աղ-քատ: Մտածում են՝ ինչ անեն, ինչ չա-



Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

նեն, որոշում են գնան, մի տեղ ծառա մտնեն, իրենց գլուխը պահեն: Գնում են, գնում, շատ են գնում թե քիչ, մեկ էլ ճանապարհին մի զառամ, մորուքը ճերմակ-ճերմակ ծերունու են հանդիպում:

— Էս ո՞ւր եք գնում, այ որդիք,— հարցնում է ծերունին:

Եղբայրները պատմում են, թե՝ էսպես ու էսպես:

— Դե որ էդպես է,— ասում է ծերունին,— դուք ինձ որդի եղեք, ես ձեզ՝ հեր: Իմ ասածները որ լսեք՝ կյանքում արդարությանը կընկերանաք ու մարդ կդառնաք:

Եղբայրները համաձայնում են և գնում ծերունու հետ: Գնում են, գնում մութ անտառներով, արձակ դաշտերով, գնում են երկա՜ր, երկա՜ր, մեկ էլ մի տնակ են տեսնում, ճերմակ, սիրուն, ծառ ու ծաղկի մեջ կորած: Տնակից մի ծաղիկ աղջիկ է դուրս գալիս: Մեծ եղբայրը աղջկան տեսնելուն պես ասում է.

— Երանի էս աղջիկն ինձ տային, մի քանի եզ ու կով էլ ունենայի, էլ ուրիշ բան չեմ ուզում աշխարհից:

Ծերունին ասում է.

— Ուզածդ՝ քեզ հալալ: Աղջիկը քոնն է: Առ, պսակվիր: Եզ ու կով էլ կունենաս: Գնա բախտավորվիր: Մենակ թե տես, արդարությունից երբեք չթեքես:

Մեծ եղբորը պսակում են էս աղջկա հետ, հարսանիք անում, ուրախանում, նրան տնավորած թողնում են այդտեղ և չորսը երեք դարձած շարունակում ճանապարհը: Շատ են գնում թե քիչ, նորից են մի սիրուն տնակ տեսնում, առաջը հայելի լճակ, կողքին՝ ջրաղաց, մի նազելի աղջիկ էլ՝ բակում գործ անելիս: Միջնեկ եղբայրը սրան տեսնելուն պես, թե.

— Երանի էս աղջկան ինձ տային, ջաղացն ու լիճն էլ իմը լինեին, գիշեր ու ցերեկ ջաղացը բանեցնեի, ապրուստի տեր դառնայի, էլ ուրիշ բան չեմ ուզում աշխարհից:

Ծերունին սրան էլ ասում է.

— Քո ուզածն էլ քեզ հալալ: Մենակ տես, հա՛, արդարությունից երբեք չդարձնես:

Միջնեկ եղբորն էլ պսակում են այս աղջկա հետ, հարսանիք անում, քեֆ-ուրախություն ու գնում: Գնում են արդեն երկուսով՝ ծերունին ու փոքր եղբայրը: Գնո՜ւմ են, գնո՜ւմ, տեսնում են մի աղքատիկ խրճիթ: Մի աղջիկ է դուրս գալիս խրճիթից արեգակի պես գեղեցիկ, բայց ոտից գլուխ կարկատանների մեջ, փոքր եղբայրն ասում է.

— Երանի էս աղջիկն ինձ տային, միասին աշխատեինք, մի կտոր հացի տեր դառնայինք:

Ծերունին ասում է.

— Քո ուզածն էլ քեզ հալալ: Ապրիր, մենակ տե՛ս, արդարությունից երբեք չթեքես:

Ծերունին փոքր եղբորն էլ է պսակում ու ինքը մենակ գնում, թե ուր՝ աստված գիտե, մեկ էլ ինքը:

Երեք եղբայրներն այդպես՝ ամեն մեկն իր ուզածի պես տնավորված ապրում են իրենց համար:

Շուտով մեծ եղբայրը հարստանում, մեծ-մեծ տներ է կանգնեցնում և գիշեր ու զօր մի մտքի է՝ ի՞նչ անի, որ ավելի շատ ոսկի կուտակի: Իսկ մի աղքատ մարդու, մի քոռ կոպեկն ինչ է, ձեռքը չի

գնում, որ հանի գրպանից տա... համա՛ թե ժլատ էր։
Միջնեկ եղբայրն էլ է հարստանում, ծառաներ է պահում, որոնք օրնիբուն աշխատում են, ինքը ուտում-խմում, ձեռքերը մեջքին դրած՝ հրամաններ է տալիս։
Իսկ փոքր եղբայրն ապրում է համեստ ու խաղաղ, իր աղքատիկ խրճիթում, քրտինքով վաստակած մի կտոր հացը միշտ մարդկանց հետ կիսելով։
Օրերից մի օր ծերունու հոգեհայրը, որ ման էր գալիս աշխարհեաշխարհ, որոշում է այցի գնալ որդիներին, տեսնել՝ ինչպես են ապրում, արդար ճանապարհից հո չե՞ն շեղվել։ Եվ մուրացկանի շորերով գնում է սկզբում մեծ եղբոր դուռը։ Գլուխ է տալիս, ասում.
— Ի՞նչ կլինի, որդի, ողորմա աղքատ ծերուկիս։
— Ինչ աղքատ, ինչ ծերուկ։ Ուզում ես ունենալ՝ դու էլ աշխատիր։ Ես էս է նորնոր եմ մի կտոր հացի տեր դառել։
Այնինչ տունը, մառանները, նկուղները տրաքվում էին ամեն տեսակ բերք ու բարիքից։
Հոգեհայրը թողնում, գնում է։ Մի քիչ հեռանում է, շուռ է գալիս, նայում մեծ եղբոր տունուտեղին։ Աչքը ճպում է, ու ամեն բան կրակի ճարակ է դառնում, պրծնում։
Ծերունին գնում է միջնեկ եղբոր տունը։ Էստեղ էլ տեսնում է տունը, ջրաղացն ու լճակը շեն, ամեն բան տեղը տեղին, որդին էլ ջաղացում նստած։ Ծերուկը մինչև գետին խոնարհվում է և ասում.
— Ի՞նչ կլինի, բարի մարդ, մի բուռ ալյուր տաս, աղքատ եմ, ուտելու բան չունեմ։
— Ո՞ւր է ինձ ալյուր, իմ ցորենը դեռ չեմ աղացել։ Համ էլ ո՞ր մեկիդ տամ, քեզ նման քանի-քանիսն են էստեղ քարշ գալիս։
Հոգեհայրը բան չի ասում, գնում է։ Մի քիչ որ հեռանում է, ետ է նայում, նայելն ու ջրաղացի կրակ ընկնելը մեկ է լինում։
Ծերունին գալիս է փոքր եղբոր տունը։ Տեսնում է՝ սա ապրում է աղքատության մեջ, տունն էլ՝ նեղվածք, դատարկ, բայց՝ մաքուր։ Գալիս է մուրացկանի ցնցոտիներ հագած, գզգզված, խեղճուկրակ։
— Մի կտոր հաց տվեք, խեղճ ծերուկ եմ։
— Համեցեք, ապի, ներս մտեք,— ասում է փոքր որդին,— հաց էլ կտանք, ճամփի պաշար էլ...
Ծերուկը տուն է մտնում։ Տան հարսը տեսնում է նրա ցնցոտիները, սիրտը ցավում է, մի ձեռք հագուստ է բերում, տալիս նրան։ Ծերունին իր քրքրված շորերը հանում, նորն է հագնում։ Այդ միջոցին հարսը նկատում է նրա կրծքի խոր վերքը։ Նա մարդուն աչք-ունքով ցույց է տալիս։ Երբ ծերունուն նստեցնում են սեղանի մոտ, ուտեցնում, խմեցնում, նոր որդին հարցնում է.
— Այ ապի, ասա տեսնենք, դոշիդ էդ ի՞նչ վերք է։
— Էհ, որդի,— տնքում է ծերունին,— սա էն տեսակ վերք է, որ համարիր մահվան դռանը կանգնած եմ՝ էսօր կամ, էգուց չկամ։
— Վո՞ւյ, անբախտ մարդ,— ծնկանը զարկում է հարսը,— էս լեն աշխարհում մի դեղ ու դարման չկա՞, ինչ է։
— Կա,— ասում է ծերունին,— բայց ո՞վ կտա էդ դեղ ու դարմանը։
— Դու ասա, թե ինչ դեղ է,— ասում է տանտերը,— կարողացանք՝ կտանք, ինչի՞ չենք տա։ Ասա։
— Ասեմ,— համաձայնում է ծերունին։— Թե մեկը կրակ տա իր տունն ու ունեցածը, մոխիրը առնի՝ ցանի վերքիս, տեղնուտեղը կլավանամ։
Փոքր եղբայրը միտք է անում, միտք է անում, հետո դառնում կնկան, թե՝
— Դու ի՞նչ կասես, ա՛յ կնիկ։
— Էն կասեմ, որ,— ասում է կինը,— մենք կաշխատենք, էլի տունուտեղ կունենանք, բայց խեղճ մարդը որ մեռավ, նորից՝ լույս աշխարհ հո չի՞ գալու։
— Դե որ էդպես է,— ասում է ամուսինը,— երեխեքին դուրս բեր տնից։
Երեխեքն էլ, իրենք էլ դուրս են գալիս տնից։ Մարդը նայում է իր տանը, ափսոսում տարիներով թափած քրտինքը, բայց ավելի ափսոսում է ծերունուն։ Եվ կրակ է տալիս։ Տունը իսկույն բռնկվում է բոցերով ու անհետանում, ասես չէր էլ եղել։ Բայց նույն տեղում մի ուրիշ, գեղեցիկ, շքեղ տուն է հայտնվում։ Իսկ ծերունին կանգնած ժպտում է։
— Որդիս,— ասում է,— տեսնում եմ, որ երեք եղբայրներիցդ մենակ դու ես, որ երես չես թեքել արդարությունից։ Այսուհետև ուրախ ու բախտավոր ապրիր։
Փոքր եղբայրն այստեղ ճանաչում է իր հոգեհորը։ Նետվում է, որ գրկի, բայց ծերունին արդեն չկար...

Ուկրաիներենից թարգմանեց
ՌԱԻՍԱ ՂԱԶԱՐՅԱՆԸ

# Արամ Թալալյան



Արամ Թալալյանին նվագակցում է Լևոն Աբրահամյանը

Այս անունն արդեն հայտնի է երաժշտասեր հասարակայնությանը: Ստեղծագործական մեծ ձիրքով ու կատարողական բարձր ունակություններով օժտված այս պատանի թավջութակահարը քանիցս արդեն զարմանք ու հիացմունք է պատճառել իր ունկնդիրներին, հանդես գալով ոչ միայն Երևանում, այլև Թբիլիսիում, Բաքվում, Ռիգայում և այլուր...

Հայրը անվանի թավջութակահար, պրոֆեսոր Գերոնտի Թալալյանն է: Որդին, իր կյանքի առաջին օրերից սնվելով դասական երաժշտությամբ, շատ վաղ ցուցաբերեց իր արտասովոր ընդունակությունները: Այս ամենին ավելացավ համբերությունն ու համառ աշխատանքը, որոնք հնարավոր դարձրին նրա ընդունակությունների զարգացումն ու փայլուն դրսևորումը:

Պատանի երաժշտին բնորոշ են գործիքից արտաբերած ձայնի գեղեցկությունը, ճշգրիտ ինտոնացիան, կատարողական ազատ և արտահայտիչ ձևը, նաև ստեղծագործությունների խոսուն ու լրջմիտ մեկնաբանությունները: Նրա երկացանկը հարուստ է բազմաթիվ ու բազմատեսակ կոմպոզիտորների բարդ գործերով. Բախ, Լոկատելլի, Բեթհովեն, Բոկկերինի, Ռոսինի, Շոպեն, Պագանինի, Ռիմսկի-Կորսակով, Դվորժակ, Ցինցաձե, Մանսուրյան, Հարությունյան, Նաղդյան և ուրիշներ:

Երևանի Պ. Ի. Չայկովսկու անվան դպրոցի 8-րդ դասարանի աշակերտ (դասատու՝ Արմեն Մեսրոպյան) Արամ Թալալյանը օժտված է նաև ցայտուն արտիստիզմով: Հասարակության ներկայությունը չի վախեցնում նրան, այլ ոգևորում է: Այդ է պատճառը, որ նա երաժշտական երկր անկրկնելի հասցնում է ունկնդրին:

— Առաջին իսկ հնչյուններից ունկնդիրների համար պարզ դարձավ, որ ելույթ է ունենում իր տարիքի համար անսովոր օժտվածության տեր մի թավջութակահար,— ահա թե ինչ ասաց նրան ունկնդրելուց հետո հանրապետության վաստակավոր արտիստ, պրոֆեսոր Վիլլի Մոկացյանը,— հասուն երաժիշտ կատարողներին անգամ միշտ չէ, որ հաջողվում է հաղթահարել Բախի 5-րդ սյուիտն ու Լոկատելլիի ռե-մաժոր սոնատը, որոնք պահանջում են ոչ միայն գեղարվեստական, այլև տեխնիկական բարդ խնդիրների իրականացում: Պատանի թավջութակահարը դրսևորեց հեղինակային տեքստի նկատմամբ խստապահանջ վերաբերմունք, ձայնի հստակություն, մաքրություն, յուրաքանչյուր երաժշտական մտքի խորիմաստ ընկալում և հիանալի մատուցում:

Բարի երթ ցանկանանք պատանի երաժշտին և նորանոր հաջողություններ:

ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆ




ԱԶԱՏ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

# Մայր Արաքսի վիշտը

Ռափայել Պատկանյանը անցյալ դարի հայ ամենասիրված բանաստեղծներից մեկն է:

Նա ծնվեց հայկական Նոր Նախիջևան քաղաքում, որը գտնվում էր ռուսական Դոն գետի ափին (այժմ մտնում է Դոնի Ռոստով քաղաքի կազմի մեջ. այդ քաղաքում են ծնվել Միքայել Նալբանդյանը, Մարտիրոս Սարյանը, Ալեքսանդր Մյասնիկյանը և ուրիշ նշանավոր հայեր): Պատկանյանների ընտանիքը հայ մշակույթին տվել է բազմաթիվ անվանի մարդիկ: Ռափայել Պատկանյանը իր ընտանիքի հերթական արժանավոր զավակը եղավ: Սովորել է Ռուսաստանի լավագույն համալսարաններում, ուսուցչական աշխատանքով է զբաղվել Թիֆլիսում ու Նոր Նախիջևանում, պարբերականներ է հրատարակել—և այս բոլորը՝ իր ժողովրդի լուսավորության գործին ծառայելու, նրա ազատասիրական ոգին արթնացնելու մտահոգությամբ:

Նրա ստեղծագործությունների գլխավոր երակը Հայաստանի և հայ ժողովրդի ազատագրումն էր, Թումանյանի խոսքերով ասած՝ «Ոսկի երազներն հայի փրկության»: Պատկանյանի խրոխտ երգերը շատ էին համա-

պատասխանում ժամանակի ոգուն: Նրա բանաստեղծությունները տարածվում էին ժողովրդի մեջ, շատերը երգեր դարձան և երգվում են մինչև այսօր: Ո՞վ չի լսել հայ ամենագեղեցիկ օրորոցայիններից մեկը.

Արի, իմ սոխակ, թող պարտեզ մերին,
Տաղերով քուն բեր տըղիս աչերին.
Բայց նա լալիս է. դու, սոխակ, մի գալ,
Իմ որդին չուզե տիրացու դառնալ:

Այս երգի մեղեդին ժողովրդական է: Բանաստեղծությունն այնքան է սիրվել, որ առանց մասնագետ երաժիշտների միջամտության, գտել է իր մեղեդին: Մայրը հերթով հրավիրում է այլևայլ թռչունների՝ սոխակին, աբեղածագին, տատրակին, կաչաղակին և խնդրում, որ նրանք իրենց երգով քուն բերեն իր տղային: Բայց նրանց երգերը տղային դուր չեն գալիս: Մայրը վերջում դիմում է բազեին.

Թող որսըդ, արի, քաջասիրտ բազե,
Քու երգը գուցե իմ որդին կուզե...
Բազեն որ եկավ՝ որդիս լըռեցավ,
Ռազմի երգերի ձայնով քընեցավ:

Ռազմի երգերով պետք է քնեին ու արթնանային հայ մանուկները և պիտի դառնային հայրենիքի զինվորներ, մարտնչեին նրա ազատության համար. ահա թե ինչ է բանաստեղծն ասել:

Պատկանյանի բանաստեղծություններից մեկին առանձնահատուկ տեղ էր վիճակված հայ հայրենասիրական քնարերգության մեջ: Դա «Արաքսի արտասուքն» է, որ նույնպես երգի է վերածվել և իր ստեղծումից հետո անցած ավելի քան հարյուր տարիների ընթացքում պահպանում է հմայքը: Այն խորունկ ու զորեղ հայրենասիրությունը, որով համակված է այդ բանաստեղծությունը, նրա համար ճանապարհ է հարթել դեպի սերունդների հոգիները:

Բանաստեղծությունը գրված է իբրև զրույց հայոց երկրի խորհրդանիշերից մեկի՝ Արաքս գետի հետ: Դա ողբ է, նման «Եդեսիայի ողբին», որ 12-րդ դարում գրել է Ներսես Շնորհալին, նման մեր գրականության մյուս հայրենասիրական ողբերին: Արաքսն իրեն համեմատում է սիրելուն կորցրած այրու հետ և հիշում իր փառավոր անցյալը: Այս ձևը մեր գրականության մեջ տարածված էր Մովսես Խորենացու հռչակավոր «Ողբից» (5-րդ դար) սկսած: Ազգի անցյալի և ներկայի հակադրությամբ հեղինակը ընթերցողին մղում էր տխուր վիճակից դուրս գալու ուղին, նաև անցյալով ոգեշնչվելու, հավատով լցվելու ժողովրդի ուժերի և նրա ապագայի նկատմամբ:

Արաքսի վիշտը ոչ թե հուսահատություն, այլ պայքարի կամք և վճռականություն էր հարուցում:

Ահա այս մեծ և շինացած հայրենասիրության շնորհիվ Պատկանյանի բանաստեղծություններն ապրում են ու կապրեն հայ գրականության մեջ:





# Ռափայել Պատկանյան
(1830-1892)

## Արաքսի արտասուքը

Նվեր Գևորգ Քանանյանին

Մայր Արաքսի ափերով
Քայլամոլոր գընում եմ,
Հին-հին դարուց հիշատակ
Ալյաց մեջը պըտրում եմ:

Բայց նոքա միշտ հեղհեղուկ,
Պըղտոր ջըրի եզերքին
Դարիվ-դարիվ խըփելով
Փախչում էին յալագին:

— Արա՛քս, ինչո՞ւ ձըկանց հետ
Պար չես բռնում մանկական,
Դու դեռ ծովը չհասած՝
Սըգավոր ես ինձ նըման:

Ինչո՞ւ արցունք ցայտում են
Քու սեգ, հըպարտ աչերից,
Ինչո՞ւ արագ փախչում ես
Այդ հարազատ ափերից:

Մի՛ պըղտորիլ հատակըդ,
Հանդարտ հոսե՛ խայտալով,
Մանկությունը քու կարճ է՝
Շուտ կը հասնիս դեպի ծով:

Վարդի թըփեր թո՛ղ բըսնին
Քու հյուրընկալ ափի մոտ,
Սոխակները նոցա մեջ
Երգեն մինչև առավոտ:

Մըշտադալար ուռիներ
Սառ ծոցի մեջ քու ջըրին,
Ճկուն ոստըն ու տերև
Թող թաց անեն տապ օրին:

Ափերիդ մոտ երգելու
Հովիվք թող գան համարձակ,
Գառն ու ուլը քու վըճիտ
Ջուրը մըտնին միշտ արձակ:

Մեջքը ուռցուց Արաքսը,
Փրփուր հանեց իր տակից,
Ամպի նըման գոռալով,
Էսպես խոսեց հատակից.

— Խիզա՛խ, անմի՛տ պատանի,
Նիրհըս ինչո՞ւ դարևոր
Վրդովում ես, նորոգում
Իմ ցավերը բյուրավոր:

Սիրելիի մահից հետ
Ե՞րբ ես տեսել, որ այրին
Ոտից գըլուխ պըճնվի
Իր զարդերով թանկագին:

Ո՞րի համար զարդարվիմ,
Ո՞րի աչքը հրապուրեմ,
Շատերն ինձ են ատելի,
Շատերին՝ ես օտար եմ...

Իմ ազգակից գիժ Քուռը,
Թեև այրի ինձ նըման,
Ըստրկորեն կրում է
Գայթակղիչի կուռ շղթան:

Բայց նա ինձ չէ օրինակ,
Ես հայ՝ հայիս կրճանչնամ,
Օտար փեսա չուզելով,
Ես միշտ այրի կըմնամ:

Կար ժամանակ, որ ես էլ,
Ծըքեղազարդ հարսի պես.
Հազար ու բյուր պըչրանքով
Փախչում էի ափերես:

Հատակըս պարզ ու վըճիտ,
Կոհակներըս ոլորուն,
Լուսաբերը մինչև այգ
Ջըրիս միջին էր լողում:

Ի՞նչը մընաց էն օրից,
Ո՞ր ջըրամոտ գեղերըս,
Ո՞րը իմ շեն քաղաքից,
Ո՞ր բերկրալի տեղերըս:

Ջուրքը ջըրի ամեն օր
Իր սուրբ ծոցեն Արարատ
Մայրախընամ ինձ սընուցդ
Պարգևում է լիառատ:

Բայց ես այն սուրբ ջըրերով
Սուրբ Ակոբի աղբյուրին,
Պիտի ցողեմ արտորա՞յք
Իմ ատելի օտարին...

Մինչ իմ որդիք,— ո՞վ գիտե—
Ծարավ, նոթի, անտերունչ
Օտար աշխարհ հածում են
Թույլ ոտքերով կիսաշունչ...

Հեռու՜, հեռո՜ւ քըշեցին
Բընիկ ազգըն իմ Հայկյան,
Նորա տեղը ինձ տըվին
Ազգ անկըրոն, մոլեկան:

Դոցա՞ համար զարդարեմ
Իմ հյուրընկալ ափերը,
Եվ կամ՝ դոցա՞ հրապուրեմ
Մըպոոտ, պըլշած աչերը:

Քանի որ իմ զավակունք
Այսպես կու մընան պանդուխտ՝
Ինձ միշտ սըգվոր կր տեսնեք,—
Այս է անխաբ իմ սուրբ ուխտ...

Էլ չի խոսեց Արաքսը,
Հորձանք տվեց ահագին,
Օղակ-օղակ օձի պես
Առաջ սողաց մոլեգին:

---

Ռաֆայել Պատկանյանի այս բանաստեղծությունը երգի են վերածել Պ. Աֆրիկյանն ու Վ. Վիշնյակը:

ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ

# Հանդիպման ու անջատման փարիներ

Նկարը՝ ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Կայտառ խարիուսները մեծ արագությամբ սլանում էին ջրերի հոսանքին հակառակ: Բծավոր, ծանրաշարժ իշխանաձկները անցնում էին գետի հատակին ավելի մոտ և չէին շտապում:

Մի քանի օր առաջ, Կալիմա գետի ջրերը թողած՝ արդեն փոքր գետերն էին մտել կետաձկների, սապատավոր ձկների վտառները: Նրանք իրենց չափերով ավելի խոշոր էին, քան իշխանաձկները, ավելի հաստափոր, լայնալանջ. փոքր ջրերում չէին տեղավորվել՝ իրար քսվելով, իրար խանգարելով, վիրավորված, արնոտ կողերով մի կերպ հասել էին լեռներից իջնող վտակների ակունքները: Իրենց երկար ճանապարհին նրանցից շատերը դուրս էին ընկել ջրերից: Մենք տեսանք նրանց կմախքները գետերի ափերին, որոնք նրանց ծանր ճակատագրի վկաներն էին: Առհասարակ գարնան այդ օրերին ձկները հավաքվում-լցվում են մեծ գետերի խառնարանները, գալիս են երկարատև ձմեռվա անշարժությունից հոգնած, քաղցած, հոսանքին հակառակ լողալով, բարձրանում են լեռները՝ ամպերի տակից բխող մաքուր աղբյուրների ակունքներում ձկնկիթ դնելու: Այս երկրամասում գարունը շուտ է անցնում, տասներկու ամիսներից տասը ձմեռ է, բևեռային ցուրտ գիշերներ: Կարծես կենդանիներն ու բույսերը շտապում են մընացած երկու ամիսների ընթացքում անցնել իրենց կենսական, բնական ընթացքին համապատասխան զարգացման բոլոր փուլերը՝ կյանքը շարունակելու համար: Երբ ժամանակն անցավ, օրերը տաքացան, ձկները սկսեցին լողալ ջրերի տարբեր խորություններում: Հավիտենական կառնամանիքների մեջ կաշկանդված լեռներից արցունքի պես վճիտ վտակներ

վազեցին, իջան, խառնվեցին իրենց պես վճիտ առվակներին, գետակներ ու գետեր դարձան, լցվեցին, հարթավայրերը և ամառային ալարկոտությամբ տարածվեցին, լցվեցին փոսերն ու խորխորատները, լճացան ժայռերի տակ: Ամառ էր արդեն, կարճատև ամառ: Արևն այլևս չէր հեռանում երկնակամարից, գիշերները ցերեկվա պես լուսավոր էին՝ մի օրը երկուս էր դառնում, մի արևը՝ երկու: Այսպես, բույսերն ու կենդանիները չէին հասցրնի իրենց բազմացման բնական ընթացքի մեջ մտնել:

Արեղնիկան գետի ափին կանգնած, կարթս գցել էի ջուրը, սպասում էի, որ ձուկը խփեր: Նայում էի պարզ ջրերում լողացող ձկներին, որ վտառներով անցնում էին կարթիս կողքով, երբեմն կանգնում, պոչով, լողակներով հարվածում էին կարթաթելին ու անցնում: Զարմանում, բարկանում էի՝ ինչո՞ւ չեն խփում: Իսկ ինձանից չորս-հինգ քայլ հեռու կանգնած մի չուկչի-ձկնորս անընդհատ ձկներ էր, որ հանում էր ջրից և մի կողմ նետում: Ես ստուգեցի՝ կարթիս հագցրած որդը դեռ կենդանի էր, բայց ինչո՞ւ ձուկը չէր խփում՝ չէի հասկանում: Երբ չուկչին իր որսն ավարտեց, ձկները լցրեց պարկը, եկավ և իմ կողքին կանգնեց: Երևի ուզում էր տեսնել, թե ես ինչ եմ անում: Ես արդեն ոչինչ չէի անում: Մեկ ժամից ավելի կանգնած, նայում էի ձկների վտառներին, բարկանում էի նրանց վրա և ոչինչ անել չէի կարողանում, նրանցից ոչ մեկը կարթիս չէր խփում: Վերջապես տեսա, թե ինչպես խարիուսների մի մեծ վտառ մոտեցավ կարթիս: Նրանք էլ քրսվեցին կարթաթելին, լողացին շուրջը, նայեցին խայծին, պոչով հարվածեցին, բայց չխփեցին: Ես ինձ այլևս զսպել չկարողացա, հարցրեցի չուկչի ձկնորսին՝ «Ինչո՞ւ ձկները կարթիս չեն խփում»: Նա խուլ մարդու բութ հայացքով նայեց ինձ և ոչինչ չասաց:

— Ի՞նչ է, ռուսերեն չգիտե՞ս,—հարցրի նրան: Նա ասածս չլսեց: Ես կարթս ջրրից հանեցի և ցույց տվեցի խայծը: Նա նայում էր ինձ, նայում էր կարթիս և միայն ժպտում էր: Ես անձրևորդը հանեցի կարթիցս ու ցուցադրաբար գցեցի ջուրը: Մի խումբ խարիուսներ հավաքվեցին նրա շուրջը, բայց նրանցից ոչ մեկը չվերցրեց որդը: Որդը ջրի մեջ ճոճվելով իջավ հատակը:

— Սա ի՞նչ բան է,— գոչեցի ես:

Չուկչին շրջվեց դեպի ինձ, և նրա ժըպիտը փոխվեց անզուսպ ծիծաղի, ծիծաղում էր մանկան անկեղծությամբ: Եվ հենց այդ պահին ջրի հատակին մի տարօրինակ բան նկատեցի, կարծես գրտնակ լիներ, խմոր գրտնակելու փայտե այն գործիքը, որը մեր տներում միշտ էլ լինում էր: Երկար նայեցի գրտնակին: Չուկչին մոտեցավ, նույնպես նայեց:

— Ի՞նչ է, իսկապե՞ս խուլ ու համր ես,— ասացի նրան բարկությամբ:

Նա պատասխան չտվեց, բայց այնպես նայեց ինձ, որ ես համոզվեցի. նա խուլ էր: Հասկացրեցի, որ ես ցանկանում եմ ջուրը մտնել՝ «գրտնակը» հանելու համար: Նա դեմքը թթվեցրեց, որը երևի պետք է նշանակեր, թե՝ գործ չունես, հարկավոր չէ: Քիչ հետո նա հեռացավ ինձանից, մտավ թփերի մեջ: Եվ երբ վերադարձավ, ձեռքին մի երկար փայտ կար: Կարթաձող էր ձեռքինը: Մոտեցավ, կարթաձողն իջեցրեց ջուրը, մի հարմար պահ գտավ և կայծակի արագությամբ կարթը խրեց «գրտնակի» մեջ: «Գրտնակը» թպրտաց, և չուկչին այն կամաց-կամաց սկսեց դուրս քաշել ջրից: Ես նայում էի, թե ինչպես էր «գրտնակը» ջրի տարբեր խորություններում փոփոխում իր գույնը: Սկզբում գրտնակը կանաչեց, հետո դեղնեց, կապտեց, ջրի վերին շերտերում կարմրեց: Իսկ երբ ձկնորսը նրան ափ նետեց, նա արդեն արծաթագույն էր:

— Սա ձուկ է, իսկական, համեղ ձուկ,— ասաց նա մաքուր ռուսերենով,— և անունը «գրտնակ» է, դու չես սխալվել, բարեկամս:

Ես շփոթվեցի, նախ՝ որ համրը խոսեց, և որ ջրից հանած ձուկը գրտնակի նման էր, անունն էլ կատալկա:

— Այո՛, այո՛ մի զարմանա, ես չուկչի չեմ, ռուս եմ, Ռյազանի շրջանի ռուս,— ասաց և ուսերս գրկեց:— Այ, դու ռուս չես, ես այդ տեսնում եմ,— ասաց, կարթս վերցրեց և իմ կարթով սկսեց խարիուսներ որսալ: Ես նայում էի նրան և չէի հավատում. կարթս իջեցնում էր ջրի վրա, բայց դեռ ջրին չհասած՝ խարիուսը դուրս էր թռչում ջրից ու ընկնում կարթին:

— Այսպես, բարեկամս, միայն այսպես, կարելի է խարիուսներ որսալ: Նրանց համար էլ պատիվ է, երբ իրենց որսում են իսկական ձկնորսները:

Ես կարթս վերցրեցի, փորձեցի ջուրն իջեցնել խայծը, բայց կարթս ջրին չհասած. խարիուսը ջրից դուրս ցատկեց,



Նետվեց կարթիս ու բռնվեց:

— Ջրի մեջ խարիուսը չի խփում, իսկ եթե պատահում է՝ այն դեպքում միայն, երբ կարթդ նետում ես բուռն հոսանքի մեջ՝ քամու ժամանակ: Իսկ օրվա կեսին՝ առհասարակ չեն խփում: Այ, իշխանաձկները այլ են, նրանք խայծը վերցնում են որոշակի խորության մեջ: Իսկ գրտնակները երբեք կարթին չեն մոտենում, չեն խփում, թեկուզ քթի վրա էլ անձրևաորդը կախես՝ չի վերցնի: Նա նույն այդ որդը կփնտրի տիղմի մեջ և այնտեղից միայն կվերցնի: Նրա բերանի կառուցվածքն այնպիսին է, որ այլ կերպ հնարավոր չէ: Իսկ կետաձկների ու սապատավոր ձկների որսը հեշտ է և անհետաքրքիր: Այս բոլորն, իհարկե, ժամանակին կիմանաս, իսկ եթե չիմանաս, այս ձկնառատ երկրամասում անձուկ կմնաս:

Բաժանման պահին հայտարարեցինք, որ այդ օրվանից բարեկամներ ենք՝ նա գնում էր դեպի Սամչան, ես՝ դեպի Ռիբնի:

Ռիբնին գտնվում էր Դեբեն գետի ժայռանիստ ափին, փոքրիկ ավան էր: Այստեղ եղանակները համեմատաբար ավելի մեղմ էին, քամիներ չէին լինում: Տարվա մեջ պարզ, լուսավոր օրերը շատ էին: Դեբենը արագահոս էր, թափվում էր Բույունդա գետը, Բույունդայի հետ միասին գնում, թափվում էին Կալիմա գետը, Կալիման, իհարկե, ծովային խորություն ուներ, ծովագնաց նավեր էին մտնում նրա ջրերը: Դեբենը հայտնի էր նաև նրանով, որ այնտեղ խարիուս ձկները շատ էին: Այնպես եղավ, որ ես Ռիբնի ավանից տեղափոխվեցի Բուրխալայի լեռնանցքը, որ մոտ չորս հազար մետր բարձր էր ծովի մակերեսից: Ծանր և սոսկալի դժվարին պարտականություն էր դրված ինձ վրա: Լեռնանցքը միակ ճանապարհն էր, որով տարվում էին ծանրաքարշ շատ ու շատ կարևոր բեռներ: Տեղեր կային, որ ճանապարհը նեղանում, հասնում էր չորս մետր լայնության, սոսկալի, գահավեժ անդունդների վրա կախված: Ժայռերը սեղմում, ճնշում էին նրան և, եթե վարորդները հարկավոր չափով ուշադիր ու լարված չլինեին, այդքան մեծ դժվարությամբ բերված բեռն ու ավտոմեքենան անդունդը կգլորվեին: Գիշեր ու ցերեկ գալիս էին այդ բեռները, ավտոմեքենաները փնչալով հազիվ էին բարձրանում սառցապատ լեռան գագաթը և այնտեղից սողալով, սահելով մի կերպ իջնում էին

ցած: Մենք ուղեկցում էինք յուրաքանչյուր մեքենայից և պատասխանատու էինք ամեն մեկի ապահով անցման համար:

Այնտեղ, լեռան գագաթին, գերանա կապ, փոքրիկ մի տնակում ապրում էինք մենք, երեք հոգով: Սառած ու մրսած վարորդները առաջին օգնությունը մեզանից էին ստանում: Պետք է մշտապես տաք ջուր ունենայինք, քնելու տեղ, սպիրտ՝ ցրտահարությունների դեպքում բժշկական առաջին օգնություն ցույց տալու համար, մի խոսքով, այնպիսի բազմազան պարտականություններ էին դրված մեզ վրա, որ քիթ սրբելու ժամանակ չէր մնում: Սկզբում մենք երկուսով էինք այդ տնակում՝ ես և Տուրդի Մուրատը՝ աշխաբադցի մի հսկա թուրքմեն: Նա ինձանից տարիքով էր, բայց՝ ուժեղ և ուղտի պես համառ: Մի օր էլ լեռը բարձրացող ավտոմեքենաներից մեկն իր խցիկից իջեցրեց երրորդին՝ Պաշա Յուժակինն էր, նա, որի հետ ձկնորսության ժամանակ բարեկամացանք: Մենք երեքով երկու տարի շարունակ մնացինք լեռան գագաթին: Մընացինք մինչև այն սոսկալի օրը, երբ մեր լեռը Մորժոտ լեռան և մյուս լեռնային հսկաների սառցադաշտերի տեղաշարժերի և փոթորիկների հետևանքով հայտնըվեց մեկուսացման մեջ, և մենք փակված մնացինք մեր գերանակապ տնակում: Տնակը պատուհանի փոխարեն մի նեղլիկ լուսանցք ուներ: Հողմը ահագին մեծության ձյունաբլուրներ էր կուտակել մեր տան շուրջը, հաջորդ օրը ծածկել էր նաև կտուրը, որ եթե փնտրեին մեզ, տան տեղը գտնել չէին կարող: Սննդի և ջրի պաշարները շատ սուղ էին, իսկ ճերմակ գերությունից ազատվելու հնարավորություններ չկային: Եթե լեռան մեծ գագաթի սառցադաշտը պոկվեր (ասում էին, որ եղել է ինչ-որ ժամանակ) և գար մեր խեղճ տնակի վրա՝ մեր հետքն այլևս չէր գտնվի: Պաշարման երրորդ օրը մեր խըրճիթը լցվեց ահավոր դղրդյուններով՝ հողմը մեծ-մեծ քարեր էր գլորում, դրանք կպչում էին մեր տնակին, և տնակը ցընցվում էր: Մենք զգում էինք, թե որ քարը գլորվեց անդունդը, որը դեմ առավ մեր տանը և մնաց: Օրվա վերջում մեզ թվաց, թե տնակը թեքվել է.

— Պաշա, դու զգո՞ւմ ես, որ թարմ օդ է ներս գալիս: Երևի հիմքը խախտվել է, ճեղք է տվել:

— Շատ լավ է, Մուրատ,— ասաց Պաշան,— հողմն ինքն է բացում մեր փրկության դուռը: Պատկերացնո՞ւմ ես, Մուրատ, քամին մեր տնակը կտանի, և մենք հրեշտակների պես դուրս կթռչենք այնտեղից, կսավառնենք երկնքում, և մարդիկ կտեսնեն մեզ, ոգիների տեղ կդնեն,— Պաշան աշխատում էր թեթևացնել մեր տագնապը, զանազան հավատալի և անհավատալի պատմություններ էր անում, զավեշտական կատակներ, նույնիսկ ուրախ երգեր էր երգում և փորձում էր համոզել մեզ, որ մեր գերությունը երկար չի տևի: Բայց հողմերը երկարատև էին, համառ:

— Պաշա, հանաք մի անի,— ասաց Տուրդի Մուրատը,— ես այս գիշեր մեռնելու եմ:

— Որոշե՞լ ես, ինչ է:

— Որոշված է դեռ մանկուց: Երբ փոքր եմ եղել, Պաշա, մի գուշակ է եկել մեր տունը և մորս ասել է. «Այս երեխան շատ կապրի, բայց կմեռնի այն օրը, երբ փակված մնա մի տնակի մեջ և դուրս գալ չկարողանա: Կմեռնի այն գիշերը, երբ հողմեր փչեն, սպառնան տնակը քանդել, օդի պակաս կլինի և երկու տըղամարդ կլինեն մոտը»: Ինչպես տեսնում ես, ամեն ինչ կատարվում է ճշտությամբ: Ես այս գիշեր կմեռնեմ, Պաշա: Ինձ կթաղեք այստեղ, լեռան վրա:

Իհարկե, մենք սնոտիապաշտներ չէինք և չէինք կարող հավատալ Տուրդի Մուրատին, իսկ ինքնաներշնչման ուժի մասին մոռացել էինք: Հասկանալի էր, պառկեցինք քնելու այնպես, ինչպես միշտ քընում էինք: Պաշան երգում էր անցատման և սիրո երգեր: Քամին ոռնում էր դրսում, քարեր էր գլորում: Մեր խեղճ խրճիթը ճռճռում էր ցավից: Մեր փոքրիկ լուսանցքի միջով կարողանում էինք գիշերը ջոկել ցերեկից: Եթե այդ լուսանցքն էլ չլիներ, միևնույնն է, կիմանայինք՝ երբ է բացվում լույսը, մարդս չի կարող չզգալ լուսաբացը: Գիշերվա կեսին ճռնչացին մեր որբ տնակի ծածկի գերանները: Պաշան, որ երբեք խորը չէր քնում՝ արթնացավ:

— Վեր կաց, Յան,— ասաց նա,— Տուրդին մեռել է:

Չորս թե հինգ օրից տարերքը հանդարտվեց, տայգան խաղաղվեց: Մեզ հանեցին ձյան գերությունից: Լեռնանցքի ճանապարհը չէր երևում, այստեղ-այնտեղ մանկական խաղալիքների նման, տարբեր դիրքով թափված էին սառցակալած ավտոմեքենաները:

ՄՈՐԻՍ ՓՈՑԽԻՇՎԻԼԻ

# Մայրիկ

(Բանաստեղծությունը նվիրված է հարևանուհի Սաբեթին, հայազգի մի կնոջ, որը մայրական հոգատարություն է ցուցաբերել բանաստեղծի նկատմամբ, նրա մանկության օրերին):

Մորս քույրություն անելուդ համար,
Լույսդ իմ ճամփին սփռելուդ համար,
Իմ ցավը մանկուց տանելուդ համար,
Սրբության համար քո աղ ու հացի...
Ես խոնարհվում եմ առջևդ, մայրիկ:

Անուշ օրորդ ականջիս հասավ,
Օրորոցն անտիկ իր երգը ասավ,
Երկրիդ Նաիրի՝ արյան ավազան,
Արյուն, որ վառվող լույս է սրբազան,
Այժմ և ընդմիշտ օրհնանք տամ, մայրիկ:

Օրհնանք օջախիդ՝ պատիվը պահող,
Օրհնանք աչքերիդ՝ աստղերին նայող,
Արցունքի ցողով ծաղկող քո քարին,
Քո բիբլիական ծարավ աշխարհին
Այժմ և ընդմիշտ օրհնանք տամ, մայրիկ:

Քո հին, հինավուրց լարին ողբասաց,
Սուրբ Կոմիտասի ցավին սրբացած,
Քո կաթով սնած մեծ Մարտիրոսի
Վրձնի հարվածով՝ լույսի պես շաղած,
Օրհնանք, հավիտյան օրհնանք տամ, մայրիկ:

Գոհանամ ես քո անուշ պատկերով,
Ալմաստ ու մագնիս քո Արարատով,
Եվ քո Գառնիով, և քո Գեղարդով,
Եվ քո Սևանով՝ երկնաձույլ երազ,
Այժմ և ընդմիշտ գոհանամ, մայրիկ:

Զանգը հնչում է կանչով արթնացման,
Զանգը խփում է մոր սրտի նման,
Սրտին երբ հասնի, հոգին կիմանա.
«Մայրերի միջև թե որ սեպ չկա,
Զավակների մեջ չպետք է լինի»:

Մոր ձայնը զանգ է, զանգ զգոնության:
Գոհանամ, որ միշտ ինձ հավատացիր,
Հայոս-Քարթլոսի հրաշքը բացիր,
Թշնամին, գուցե, գլխի էլ չընկնի,
Որ, երդվելով իմ վրացիությամբ,
Օծել եմ ես ինձ սուրբ եղբայրությամբ:

Վրացերենից թարգմանեց
ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՀՈՎՆԱԹԱՆԸ

Նկարը՝ ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

# Գյուղ Մադինա

Հաղթանակի 40-ամյակի առթիվ ցուցահանդես էր ուղարկվելու Գերմանական Ֆեդերատիվ Հանրապետություն: Մադինայի երեխա-



ների մեկը մի ծառի կոճղ էր նկարել՝ կողքերից ընձյուղվող շիվեր, մյուսը՝ մի այլ խորհրդանշող պատկեր, իսկ ահա Լուսինե Ադամյանն ու Վեներա Մնացականյանը նկարել են ծաղիկներ:

— Ինչո՞ւ նկարի մեջ տանկ չկա, կռիվ չկա, ծաղիկներով պատերա՞զմ կլինի,— ասում է Լուսինեի հորեղբայրը,— որ իմանայիք մեզ ինչ էին անո՜ւմ...

— Ափո, ես կռիվ չուզիմ...

— Ծաղիկներ ենք ուղարկում, որ իմանան մենք խաղաղություն ենք կամենում:

— Մեծերը ամեն հարց կռվով են լուծում,— ասում է Լուսինեի հորեղբայրը,— երեխաներր նուրբ արարածներ են, ծաղիկներով են բացատրում իրենց մտքերը:

Մարտունիից դեպի հյուսիս-արևմուտք ճանապարհ կա, որ տանում է Ներքին Գետաշեն, Վերին Գետաշեն ու այնուհետև բլրաթըմբերի ու ձորի ուղեկցությամբ հասցնում է գյուղ Մադինա: Մինչև 1978 թվականը մեծերը չկարողացան գյուղի անունը նշանավոր դարձնել: Այդ բանը ծնողների թերահավատ հայացքների առաջ արեցին երեխաները: Այսպես եղավ: 1976 թվականին Ներսես Կարապետյան անունով Երևանում բնակվող համագյուղացին, ավարտելով գեղարվեստի ինստիտուտը, եկավ գյուղ ու դարձավ պատկերամտածողության (նկարչության) ուսուցիչ:



Մեկ էլ երեխաները, թուղթ, մատիտ, ներկեր առած, սկսեցին հանդ ու չոլում պտտվել: Նկարչության դասերը մինչ այդ ֆիզկուլտուրայի ուսուցիչն էր համատեղել և մատների արանքից նայվող առարկան ծնողների համար սկսել էր դառնալ խորհրդավոր, իսկ երեխաների համար՝ կարևոր:

Առաջին օրերին երկար էին նկարում: Մի օր էլ դպրոցում աղմուկ բարձրացավ: Մեկի հայրն էր եկել: Բարկացել էր, այնպե՜ս էր բարկացել... «Ինչ է,— ասաց տնօրեն ընկ. Երիցյանին,— դպրո՞ց է, թե բանտ, ինչո՞ւ չեք թողնում աղջիկս տուն գա, հաց ուտի»: Ու երբ ընկեր Երիցյանի հետ արվեստանոց մըտան, աղջիկը՝ Հեղնարը, նկարում էր: Հայրը

շփոթվեց և նշաններով հասկացնում էր տըղ-նօրենին, թե՝ դուրս գանք, չիմանա, որ եկել եմ:
Հաջորդ օրը տնօրենը Հեղնարի հորը տե-սավ շրջկենտրոնում՝ նկարչական պարագա-ներ թևի տակ՝ աղջկա համար էր տանում:
Գյուղ է, դժվար թե հնարավոր լիներ ձեռք բե-րել այն ամենը, ինչ անհրաժեշտ էր, և ու-սուցիչն էր իր սաների համար այդ ամենը բերում մայրաքաղաքից:
Երեխաների աշխատանքների մեծ մասի մեջ ժողովրդական կոլորիտ կա, առօրյա ի-րերից մինչև բնության տարերքը:
Մադինայի երեխաների նկարները ցուցա-դրվեցին մայրաքաղաք Երևանում, ապա՝



ԼԱԼԱ ԲԵՅԲՈՒԹՅԱՆ, 18 տ. 1988 թ.

ՎԵՆԵՐԱ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ, 15 տ. 1988 թ.

ԱՐՄԵՆՈՒՀԻ ԲԵՅԲՈՒԹՅԱՆ, 15 տ. 1988 թ.

ՄԱՆՈՒԿ ԵՐԻՑՅԱՆ, 15 տ. 1988 թ.

Սովետական Միության տարբեր վայրերում, անցան երկրեերկիր՝ ԱՄՆ, Նորվեգիա, Կա-նադա... Նրանց մասին ֆիլմեր նկարահան-վեցին. 1981 թվականին՝ ՅՈՒՆԵՍԿՈՅԻ պատ-վերով, 1982 թվականին՝ «Երևան» ստուդիա-յի, 1983 թվականին՝ Ֆրանսիայի հեռուստա-տեսության կողմից: Հաղորդումներ եղան հայկական (1983 թ.) և երկու անգամ Կենտ-րոնական հեռուստատեսությամբ (1981, 1983 թթ.): Մի խոսքով, գյուղի անունը երե-խաներն իսկապես դարձրին նշանավոր...
Ու մի օր էլ սիրելի ուսուցչին Երևան հրա-վիրեցին՝ աշխատելու գեղագիտական կենտ-րոնում:
Գյուղի համար ամպամած օր էր: Տրտմել էին: Դպրոցի բակում հրաժեշտ էին տալիս: Մեքենան սպասում էր: Ծատերը լալիս էին, և ընկեր Ներսեսը, որ արդեն մեքենա էր նստել, իջավ ու...
— Խմբակի պարապմունքները բաց չեմ թողնի,— ասաց,— մի անհանգստացեք...
— Ուռա՜,— աղաղակեցին երեխաները:
Այժմ, շաբաթ օրերին երեխաները միմյանց հայտնում են, թե ընկեր Կարապետյանը եկել է: Ընկեր Կարապետյանը եկել է՜...
Մի օր էլ ուսուցչի հետ Երևանի գեղագի-տական կենտրոնից եկավ Մարգարիտ Բա-լասանյանն ու սկսեց երեխաներին ազգա-գրական երգեր, պարեր սովորեցնել, պատ-մել դիցաբանական հերոսների մասին: Եր-



գելու համար ձայն ունեցողներին պետք էր հավաքել: Մարգարիտ Բալասանյանը, ինչ-պես Ներսեսն էր վարվել նկարչական խըմ-բակը կազմակերպելիս, փորձեց դպրոցի հա-մարյա բոլոր երեխաներին և, զարմանալի բան, շնորհալիները մեծ մասամբ նկարչա-կան խմբակի անդամներն էին:
Ցավոք, Ներսես Կարապետյանի հետ տը-խուր դեպք կատարվեց, անհրաժեշտ եղավ նրա ոտքը հեռացնել: Նույնիսկ դրանից հե-տո ուսուցիչը Երևանից հասնում է Մարտու-նու շրջան, գյուղ Մադինա ու... շաբաթ օրե-րը երեխաներն իրար իմաց են տալիս.
— Եկել է...

ՄԽԻԹԱՐ ՈՍԿԱՆՅԱՆ



ԱԼԵՔՍԱՆ ԿՈՒԼԱԽՍԶՅԱՆ

# ՏԵՐՅԱՆԻ ԹԱՆԳԱՐԱՆՈՒՄ

Լուսանկարը՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

1985 թվականին, Տերյանի 100-ամյակի օրերին, բանաստեղծի անունը կրող Երևանի № 60 դպրոցում բացվեց նրան նվիրված թանգարան: Մեկ տարուց էլ քիչ ժամանակ է անցել, բայց թանգարանը արդեն իսկ աչքի է ընկնում ցուցանմուշների առատությամբ և եզակիությամբ:

Դպրոցին դեռ չծանոթացած, դեռ շենքի դուրսն ու ներսը աչքի չանցկացրած, մեղմ քնքշություն է հուշում հենց միայն անվանումը: Տերյանի դպրոցի յուրաքանչյուր աշակերտ, իր դպրոցի անունն արտասանելիս, ապրում է հրճվանք, տխրություն ու թախիծ, նազանք ու հպարտություն:

Տերյանի դպրոցում բանաստեղծի ոգեղեն գոյությունը զգացվում է ամեն քայլափոխի:

Դպրոցը տերյանական միջոցառումների ամենաակտիվ մասնակիցն ու կազմակերպիչներից է: Բանաստեղծի ծննդյան 100-ամյակի տոնակատարության օրերին դպրոցը հյուրընկալեց Օրենբուրգի իրենց պատանի ակումբակիցներին՝ պատանի տերյանականներին: Ուղևորությունները Տերյանի երթուղիներով ավելի ամրապնդեցին կապերը և՛ բանաստեղծի ծննդավայրի, և՛ հեռավոր Օրենբուրգի բարեկամների հետ:

— Մեր լայն կապերը տերյանական տարբեր կենտրոնների հետ օգնեցին իրագործելու թանգարան ստեղծելու ծրագիրը,— պատմում է դպրոցի կազմա-

կերպիչ, թանգարանի հիմնադրման ամենաակտիվ մասնակից Վալերի Փիլոյանը,— Գանձայից մեզ հետ բերինք մի քանի ցուցանմուշ, որոնք էլ դարձան թանգարանի հիմքը:

Սրահում ցուցադրվող հնամենի կժերն ու կճուճները, մեծ ու փոքր պղինձները, գավերը բերված են այն գանձացիների տներից, որոնց տարիքը հարյուրից անցնում է:

Տերյանի «տուն-թանգարանն է»...պատրաստված լուցկու հատիկներով, որի երկարությունը կես մետրից ավելի է, բարձրությունը՝ 30—40 սմ:

Տերյանի ծննդավայրի պատկերները ամբողջացնում է 19-րդ դարից «հյուր եկած» ջավախեցու քարաշեն խրճիթը, որը թանգարանին է նվիրել Բոգդանովկայի շրջկենտրոնը: Եթե երևակայությամբ վերացնենք ցուցափեղկը, կհայտնվենք հին Գանձայում, որի գյուղամիջյան նեղլիկ փողոցներով վազվզել է պատանի Տերյանը, իսկ երբ հոգնել է՝ նստել է այն սալ քարին, որ գցած է խրճիթի դռանը. այսպես են երևակայում պատանի տերյանականները՝ ցուցափեղկերի երկարությամբ դանդաղ շարժվելով: Իսկ սրահի անկյունից լսվում են Տերյանի մեղմ տողերը «Երկիր Նաիրի» շարքից. մեկը արտասանում է:

— 1881 թվականին գործված գորգը, որ երկար ճանապարհ է անցել, Տեր Սուքիասի տնից իբրև օժիտ գնացել է Տերյանի քրոջ տուն, հետո Տերյանի թոռը նվիրել է մեր թանգարանին,— պատմում է ընկեր Փիլոյանը:— Իսկ սա Գանձայի դպրոցի այն հատվածն է, որտեղ գտնվել է Տերյանի դասասեղանը: Նորից լուցկու հատիկներով է պատրաստված, սա էլ Գանձայի դպրոցականների նվերն է:

Թանգարանի ցուցանմուշների մեծ մասը բավական երկար ճանապարհ են անցել՝ Օրենբուրգից, Բոգդանովկայից, Գանձայից հասել են Երևան: Մի մասն էլ ձեռք են բերվել տեղում՝ Տերյանի հարազատների, դպրոցի աշակերտների ու ծնողների ջանքերով: Եվ այդ բոլորի մեջ նորից իր անփոխարինելի մասնակցությունն ունի Վալերի Փիլոյանը: Պատճենահանել են Տերյանի լուսանկարների մի մասը, իսկ մի փոքր մասն էլ նվեր են ստացել տարբեր մարդկանցից:

Կողք-կողքի տեղադրված վահանակների բազմաթիվ նկարներով ծանոթանում ենք Տերյանի կյանքի տարբեր շրջաններին՝ «Մանկություն և պատանեկություն», «Ուսանողական տարիներ», «Հեղափոխական գործունեությունը» և այլն. այսպես են վահանակների խորագրերը, իսկ նկարները շատ-շատ են: Դրանց մեջ կան նաև դեռևս չհրապարակված լուսանկարներ: Ահա դրանցից մի քանիսը. «Տերյանի հարազատներ» բաժնում բանաստեղծի կնոջ՝ Սուսաննա Պախալյանի, նրանց կյանքի պահերը պատկերող լուսանկարներ, որ թանգարանին է նվիրել Սուսաննայի բարեկամներից մեկը:

Օրենբուրգի № 24 դպրոցի «Պատանի տերյանականներ» ակումբի սաները իրենց ղեկավար Ռիմա Սանդակովայի հետ թանգարան են բերել Տերյանի գերեզմանից մի բուռ հող՝ փոքրիկ տուփի մեջ, որը նույն տեղից բերված եղևնու ճյուղի հետ կազմում է բանաստեղծի գերեզմանի փոքր մասնիկը:

Դպրոցի աշակերտները անվերջ ձգտում են այնպիսի մի նոր բան ավելացնել սիրելի բանաստեղծի թանգարանում եղածի վրա, ինչպիսին է, օրինակ, Գանձայի դպրոցի 7-րդ դասարանցիների նվիրած դպրոցի մակետը կամ դպրոցի 4-րդ Բ-ի մանր քարերով ու ավազով, սոսնձի օգնությամբ պատրաստած Գանձայի տուն-թանգարանի հրաշալի մակետը, որն իր համապատասխան գույներով, գեղանկարչական զարմանալի նրբությամբ ու ճշգրտությամբ հիացնում է դիտողին: Իսկ 6-րդ դասարանցի Վարդան Փիլոյանը չորացրած ծաղիկներով ու սոսնձով պատրաստել է Տերյանի դիմանկարը՝ կողքին կանաչ տերևներ, 100 թիվը, որոնք գեղեցիկ ձևավորելուց հետո խնամքով դրել է շրջանակի մեջ: Այդ յուրօրինակ դիմանկարը նաև խորհրդանշական է թանգարանի համար, որովհետև թանգարանը բացվեց բանաստեղծի ծննդյան 100-ամյակի առթիվ, ներս մտնելիս այն առաջինն է աչքի ընկնում:

Թանգարանի կազմավորմանը մասնակցել են նաև աշակերտների ծնողները, նրանց ջանքերով հավաքվել են արխիվային նյութեր՝ Տերյանի գրքերի հին հրատարակություններ, տարբեր տարիների թերթերում լույս տեսած նրա գործերից, նրա մասին նյութեր: Դպրոցի ձայնադարանը ընդգրկում է Տերյանի խոսքերով երաժշտական ստեղծագործությունները, դպրոց այցելած շատ նշանավոր մարդկանց կենդանի խոսքը, ձայնագրություններ տարբեր հանդիպումներից:

# ՄԻԿՐՈԱՇԽԱՐՀԻ ՀՐԱՇԱԳՈՐԾԸ



Ահա, խոշորացույցի տակ երևում է մազի վրա ամրացված աշխարհի ամենափոքր գլոբուսը: Նրա վրա 1500 բազմագույն քարի փոշե հատիկներով նշված են մայրցամաքները: Գլոբուսը 50 հազար անգամ փոքր է բրնձի հատիկից: Ահա և աշխարհի ամենափոքրիկ ու թանկագին ջութակը, որ հավաքված է 56 փայտե մասերից և ծածկված է ոսկե փայլով: Ջութակի քաշը 0,003 գ է: Պարզ երևում են նրա 4 լարերը, որոնք կարելի է և հնչեցնել: Ջութակը տեղադրված է նրբագեղ ասեղի անցքում:

Ահա և 8 մմ երկարությամբ մարդկային մազի 4 նիստերը, վրան յուղաներկերով պատկերված միջնադարի 62 գիտնականների, փիլիսոփաների, բանաստեղծների դիմանկարներ:

Ահա և «ԽԱՉՔԱՐԵՐ» աշխատանքը 1 սմ երկարությամբ մարդկային մազի երկայնական կտրվածքի վրա փորագրված են հայկական հնադարյան 10 խաչքարեր: Պարզորոշ երևում են խաչքարերի զարդանախշերը: Ամեն խաչքարի տակ նշված է դարը, իսկ ավելի ներքև պատկերված է խաչքարի վրա աշխատող քա

րագործ-վարպետը։

Անա «Աղջիկների պարը» աշխատանքը, որտեղ թզի կորիզի կեսից պատրաստված բեմի վրա պատկերված են հայկական տարազներով Նաիրի երկրի աղջիկներ, որոնք ոսկե ֆիգուրներով ցուցադրում են հեզաճկուն պարը։

Անա «Չարլի Չապլինի աշխարհում» ամենափոքր արձանը։ Այն պատրաստված է պողպատից և տեղադրված է ասեղի անցքում։ Չապլինը կանգնած է ձեռնափայտին հենված, որը սարդոստայնից է։ Երևում են կրծքին ամրացրած մեխակը և նույնիսկ վերնաշապիկի կոճակները... Այսպես միկրոհրաշքների շարքը կարելի է երկար շարունակել։

Այս հրաշքների հեղինակը ծնվել է Երևանում, ավարտել Կոմիտասի անվան պետական կոնսերվատորիան, մասնագիտությամբ ջութակահար է։ Վեց տարեկանից սկսել է ջութակ նվագել և սիրահարված է եղել այդ գործիքին։ 13 տարեկանում Էդուարդը իրենց տանը եղած կոճղից որոշեց քանդակել ամենայայվ հնչողության ջութակը։ 20 տարեկանում արդեն փորձառու երաժիշտ էր և նվագում էր սիմֆոնիկ նվագախմբում։

40 տարի առաջ մի օր, իրենց նվագախմբի դիրիժոր Անդրանիկ Սողոմոնյանը, գիտենալով Էդուարդի ջութակ պատրաստելու շնորհքի մասին, նրան խնդրեց իր 4-ամյա աղջնակի համար (որին ջութակից բացի ոչ մի խաղալիք չէր հետաքրքրում) սովորականից մի քանի անգամ փոքր ջութակ պատրաստել։ Տեր-Ղազարյանը, սիրով հանձն առնելով գործը, փաստորեն առաջին անգամ փորձեց իր վարպետությունը, և այն հաջողությամբ պսակվեց։ Ոգևորված հաջողությունից, նա ձեռնամուխ եղավ առավել փոքրիկ ջութակների պատրաստմանը՝ նախ յուղկու տուփի չափ, իսկ ապա 14 մմ երկարությամբ, 0,5 գ քաշով, որը նրա առաջին միկրոաշխատանքն էր, որին հետևեցին նորանոր աշխատանքներ։

Եվ այսպես, Էդուարդ Տեր-Ղազարյանը, որ մինչ այդ հայտնի էր որպես ջութակահար, կարճ ժամանակամիջոցում հռչակվեց նաև որպես միկրոմանրանկարիչ-քանդակագործ։

Է. Տեր-Ղազարյանը իր ստեղծած հրաշքներով բազմաթիվ համամիութենական և միջազգային ցուցահանդեսների մասնակից է և ամենուր արժանացել է բարձրագույն պարգևների՝ ոսկե մեդալների և դիպլոմների։

Սակայն այս ամենը ինքնանպատակ կլիներ և հետզհետե կդառնար շատ սովորական, եթե Տեր-Ղազարյանը բավարարվեր մարդկանց զարմացնելով միայն։ Նա իր եզակի գիտելիքներն ու հմտությունը օգտագործում է նաև միկրովիրաբուժության (ակնաբուժության և ուռուցքաբանության) բնագավառում։ Նեյրովիրաբույժ, պրոֆեսոր Է. Կնդեղի առաջարկով Տեր-Ղազարյանը բարդ կառուցվածք ունեցող անտեսանելի 6 միկրոօղակներ պատրաստեց, որոնք հետագայում ստացան Տեր-Ղազարյանի միկրոօղակներ անվանումը, դրա օգնությամբ ինստիտուտ բուժում են ընդամենը 2—5 րոպեում։ Աշխարհում առաջին անգամ սովետական բժշկագիտության մեջ նրա պատրաստած այդ միկրոօղակների օգնությամբ կատարվեց եզակի վիրահատություն՝ գլխուղեղի պատռված (պայթած) մազանոթների վերականգնում (միացում)՝ փրկելով մարդուն անխուսափելի մահից։

Այսպես, ահա Է. Տեր-Ղազարյանը փնտրված դեմք է հատկապես ակնաբուժության և բժշկության ասպարեզում։ Նրա պատրաստած 14 միկրոնանոց (այժմ նա դրանք դարձրել է ավելի փոքր՝ 7—8 միկրոնանոց) ասեղիկներով, որոնք չեն երևում առանց միկրոսկոպի, աչքի վիրահատություն են կատարում, և մարդը ոչ մի ցավ չի զգում։ Նրա հրաշագործ ձեռքով ստեղծված մազից էլ բարակ միկրոսարքի միջոցով վերականգնվում է աչքի տեսողական նյարդը (ամենակարևորագույն մասը մարդու տեսողության համար), օգնում է բուժելու անբուժելի համարվող աչքի ատրոֆիան (աչքի հատակի նյարդերի մահացումը), կամ աչքի տրոմբը (երբ ակնախոռոչում արյունատար անոթները վնասվում են, ու աչքը կուրանում է)։ Է. Տեր-Ղազարյանի պատրաստած նոր միկրոսկոպիկ սարքի օգնությամբ տրոմբը (խցանվածքը) կտրվում, հանվում է։

Նա պատրաստել է աչքի արհեստական ոսպնյակի առաջին փորձնական նրմուշները։ Ստեղծել է միկրոներարկիչ՝ 3—5 միկրոն տրամագիծ ունեցող բջջի մեջ համապատասխան դեղամիջոց ներարկելու համար։

ԱՐԱՄ ՈՒԳՈՒՐՋՅԱՆ
Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի ինժեներ



ՀՐԱՆՏ ԱԼԵՔՍԱՆՅԱՆ

# Լեռների հավատարմությունը

Իրար չեն լքում լեռները,
Իրար չեն նեղում լեռները,
Խոր արմատներով են կապված
Իրար թև-թիկունք լեռները:

Միասին են հրճվում լեռները,
Միասին՝ կանաչում, ծաղկում,
Հողմի դեմ առանց վարանման՝
Միասին են ելնում լեռները:

Իրար փարված են լեռները,
Իրարից անբաժան լեռները,
Ինչ անցնի ու դառնա աշխարհում,
Անդավաճան են լեռները:

Լեռներից է
սկսվում հայրենիքս,
լեռների հետ՝ մերվում:
Խոր գիշերվա խորքում
երգող աստղաբույլին
լեռներով է լսում
հայրենիքս:

Անհանգիստ է վաղուց
աշխարհը այս,
իսկ երբ է եղել նա հանգիստ,
հայտնի, թե անհայտ
հողմերի դեմ
լեռների պատվար է
հայրենիքս:

Նկարները՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

ԻՆՆԱ ԳԱՄԱԶԿՈՎԱ

# Ձյունե տղան

(կատակ)

Վանյա Գրիգորևը շնչակտուր ներս վազեց և ասաց.

— Դու այստեղ նստած ես, իսկ նրան բռնեցին, ու նա նորից փախավ:

Եվ Վանյան ամբողջ ուժով աչքով արեց՝ սկզբում մեկ, հետո՝ մյուս աչքով:

Միայն թե ես, միևնույն է, ոչինչ չհասկացա: Բայց հետո նա ինձ ինչպես հարկն է ամեն ինչ պատմեց, ու պարզվեց, որ ինչ-որ տեղ սարերում, մի քարանձավում, հայտնաբերել են ձնեմարդ: Ամենակարևորն այն էր, որ այդ ձնեմարդը տղա էր եղել: Նա բոլորովին վայրենի է և ջուր խմում է անմիջապես ջրափոսից: Կլինի ութ կամ ինը տարեկան, իսկ գրել, կարդալ չգիտի:

— Դե, հասկանում ես,— ասում է Վանյան,— նա բոլորովին վայրի է: Եվ ահա մարդիկ նրան բերել են այստեղ, սկսել են սովորեցնել, իսկ նա փախել է և այժմ փողոցներում թափառում է: Նրան պետք է անմիջապես գտնել, քանի դեռ ոչինչ չի արել, կամ չի ընկել մեքենայի տակ, նա փողոցներով քայլել նույնպես չգիտի:

— Ինձ թվում է անհանգստանալու կարիք չկա,— ասացի ես,— նրան անմիջապես կբռնեն, չէ՞ որ նա մորթի ունի վրան...

— Բանն էլ հենց այն է,— զայրացավ Վանյան,— որ նրա մազերը խուզել են, լողացրել, հագցրել մեզ նման, այնպես որ նրան դժվար է տարբերել:

Այդ պահին ես հասկացա, թե ինչ է հարկավոր անել. վերցրի մայրիկիս թատերական հեռադիտակը, դուրս թռա պատշգամբ և ի՞նչ տեսնեմ: Նա վազում է մեր տան կողքով, կտրելով հրապարակը ուղիղ կարմիր լույսի տակ:

— Գրիգորև, իմ ետևից: Մենք նրան կփրկենք,— հրամայեցի ես:

Վազելով հասանք նրան, բռնեցինք ձեռքը և ասացինք.

— Այդ դո՞ւ ես:

— Ես եմ,— ասում է նա:

— Դու ձյունե տղան ես... ճի՞շտ է, որ դու ուտում ես մատներով և խմում ջրափոսից:

— Դուք ինչ է, անմորմա՞լ եք: Թողեք ինձ, ես կինոյից ուշանում եմ:
— Դե, սպասիր,— ասում եմ ես, իսկ Վանյան քաշում է թևս.
— Այս մեկր վայրի չէ, այ, այն մյուսն է վայրի: Միշտ եմ ասում: Տեսնո՞ւմ ես, ստորգետնյա անցումր թողած, թռչում է ուղեփակոցի վրայով: Վայրենիներր այդպես են անում:
Սրան թողած, վազեցինք նրա մոտ:
— Կանգնի՛ր,— գոռում ենք,—սպասիր: Հասկանո՞ւմ ես,— բացատրում ենք,—մեքենաներր քեզ համար լեռնային այծեր չեն, նրանք մետաղից են: Մենք հասկանում ենք, որ դու վայրի ես...
— Ինքներդ եք վայրի,— վիրավորվեց տղան,— ես սովորում եմ չորրորդ դասարանում:
Մենք շատ կուլտուրական ենք: Որոշ մարդկանց նման չենք թռչում ուղեփակոցների վրայով: Սրան էլ թողինք, ձեռքներս թափ տվեցինք և վազեցինք առաջ: Հանկարծ լսում ենք, որ մարդիկ չորս կողմից գոռում են, մեքենաներր սուլում են.
— Կանգնի՛ր, ո՞ւր, զգո՜ւյշ:
Մենք մոտեցանք ամբոխին և խցկվեցինք առաջ: Տեսնենք՝ վարորդը ինչ-որ բան է բացատրում միլիցիոներին, իսկ կողքին կանգնած է մի տղա: Մարդիկ հարձակվեցին տղայի վրա.
— Ինչո՞ւ փողոցի մեջտեղ թռար: Մեքենաներր քո պատճառով բախվեցին իրար: Հենց քո նմանների պատճառով է ,որ վթարներ են լինում: Ո՞ւր էիր նայում:
Այստեղ Վանյան ու ես միջամտեցինք.
— Նա մեղավոր չէ, ախր նա վայրի է: Կյանքում առաջին անգամ է մեքենա տեսնում: Նա հենց նոր է քարանձավից դուրս եկել և դեռ ոչինչ չի հասկանում:
Իսկ տղան մեզ շնորհակալություն հայտնելու փոխարեն գոռաց.
— Ինչպե՞ս թե, ես ամբողջ կյանքս քաղաքում եմ ապրել, մեքենաների բոլոր տեսակներն էլ գիտեմ:
Այստեղ մենք արդեն բարկացանք.
— Եթե այդքան գրագետ ես, ինչո՞ւ ես փողոցն անցնում մեքենաների առջևից վազելով, ի՞նչ է, դու վայրի մա՞րդ ես: Տես, թե քո պատճառով ինչ է ստացվել:
Մեր տրամադրությունր խիստ ընկավ:
— Լավ,— ասաց Վանյան,— քիթդ մի կախիր: Ձյունե տղան մեղավոր չէ, որ նրանք այդպիսին են: Բոլոր երեխաներր



պետք է փնտրեն նրան: Երբ նա գտնվի, մենք նրան ամեն ինչ կբացատրենք: Նա աստիճանաբար կսովորի և կդառնա միանգամայն կուլտուրական տղա:
Իսկ ես քայլում էի և մտածում. հանկարծ այդ տղաները, ովքեր վայրենիների պես փողոցներով վազում են, քիչ-քիչ լվացվելն էլ մոռանան, հետո՝ գրել-կարդալը, և ընդհանրապես վայրենանան: Ի՞նչ անել այդ դեպքում: Նրանց համար քարանձավներն էլ չեն բավականացնի:

Թարգմ. ՇՈՂԻԿ ՆԱԼԲԱՆԴՅԱՆԸ

ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ

# Ծախմատային թագավորի և թագուհու մասին

Ճախը՝ թագավորին,
Վախը՝ թագավորին,
Եվ ամենից վատը՝
Մատը թագավորին:

Իսկ թագուհուն ի՞նչ կա,
Ասես լինի թռչուն.
Ուր կամենա՝ խկույն
Նա այն կողմ է թռչում:

Թե ծուղակ էլ ընկնի
Կամ թե զոհվի հանկարծ,
Կորուստն անգամ նրա
Դեռ կորուստ չէ անդարձ:

Մի զինվորի դիմաց
Տեսար՝ դռներ բացեց,
Տարավ և իր տեսքով
Նոր թագուհի դարձրեց:

Եվ առաջվա նման
Սուրաց և՛ աջ, և՛ ձախ՝
Առաջվա պես շքեղ,
Առաջվա պես անվախ:

Ապրեց ուզածի պես,
Արեց ինչ կամեցավ՝
Ճաշակելով և՛ սեր,
Ե՛վ խնդություն, և՛ ցավ:

Նա՝ ամենից գերող,
Նա՝ ամենից զորեղ,
Եվ մնացավ նա միշտ,
Եվ ամենից ամեն...

Այնինչ թագավորը՝
Ծանր ու տխրահռչակ,
Կծկվում է մի տեղ՝
Գահի ու թագից կառչած:

... Ճախը՝ թագավորին,
Վախը՝ թագավորին,
Եվ ամենից վատը՝
Մատը թագավորին:



# Հարցուպատասխան

— Ի՞նչ է մարդը առանց ընկերոջ:
— Մարդ՝ մեկ ձեռքով:

— Ի՞նչ է սուտը:
— Առանց կոթի մի դանակ, որն առաջին հերթին կտրում է օգտագործողի ձեռքը:

— Այդ ի՞նչն է ավելի քիչ, քան կարծում ենք:
— Մեր խելոքությունը, արժանիքները ու ընկերները:

— Ինչո՞ւ որոշ մարդիկ ուրիշ շատերին չեն հավանում:
— Որովհետև շատ են իրենց հավանում:

— Ի՞նչն է ամենից հեշտ կորչում:
— Ժամանակը:

— Ո՞վ է իսկապես երջանիկ:
— Նա, ով ուրիշների երջանկություն է պարգևում:

— Ի՞նչ է շողոքորթությունը:
— Թույլերի ուժը, իսկ ուժեղների՝ թուլությունը:

— Ինչի՞ է նման ծույլը:
— Մի դիակի, որը դժբախտաբար չենք կարող թաղել:

Հավաքեց և հունարենից թարգմանեց
ՍԱՐԳԻՍ ՋԵՐՋԵՐՅԱՆԸ

---

## «ՊԻՈՆԵՐ» № 8-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

Սկզբից անցնում են երեխաները: Մեկը մնում է մյուս ափին, իսկ երկրորդը վերադարձնում է նավը: Գետը անցնում է մի մեծահասակ: Նավը վերադարձնում է երեխան և իր հետ տանում է մյուսին: Մեկը մնում է, իսկ մյուսը նավը վերադարձնում է, որպեսզի տեղափոխվի հաջորդ մեծահասակը: Եվ այսպես հերթով տեղափոխվում են բոլորը:

---

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.:

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԱՅՎԱԶՅԱՆ Վ.:

